


№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1952 թ

# ՊԻՈՆԵՐ




ԱՇՈՏ ԳՐԱՇԻ

Նկ. Բ. ՄԱՋՄԱՆՅԱՆԻ

Մեր փողոցում
Վարդն է բացվում
Պայծառ գույնով,
Անուշ բույրով:

Արեգակն էլ
Իր ոսկեթել
Գորգն է գործում
Մեր փողոցում:

Երգ մուրճերի,
Բրիչների,
Եռանդ, մրցում՝
Մեր փողոցում:

Քար են տաշում,
Պատ են քաշում,
Տուն կառուցում
Մեր փողոցում:

Շքեղ շենքեր,
Ծառաշարքեր
Լույսի ծոցում՝
Մեր փողոցում:

Պարտեզ, պուրակ,
Ծաղկանոց, պարկ,
Ջրեր ցոլուն՝
Մեր փողոցում:

Ավտոների,
Տրամվայների
Վազք, սլացում՝
Մեր փողոցում:

Մանկական երգ,
Ճամբարի երբ,
Դրոշներ բոցուն՝
Մեր փողոցում:

Հանդիսավոր,
Վառ, լուսավոր
Տոն է, ցնծում
Մեր փողոցում:



digitised by A.R.A.R.@




*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1952 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԲՆՈՒԹՅԱՆ ԳՐԿՈՒՄ

*Ֆոտո-էտյուդ Հ. ՀԵՔԵԲՅԱՆԻ*

# ԿՌՆԱՉ ԽՍՏԱՓԵՏԸ

Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

(Հեքիաթ)

Նկ. Վ. ԹՕՎԱՆՅԱՆԻ

Արդյոք եղե՞լ եք մեր լեռներում: Եթե եղել եք, ապա ձեզ ծանոթ է այս կոլտնտեսությունը: Սա հայտնի է շաքարի պես քաղցր խաղողով, հարյուր հատիկանոց հասկեր տվող ցորենով, առատ մրգերով, որոնց ծանրությունից կռանում են ծառերի ճյուղերը, ոչխարների ստվար հոտերով, որ արածում են ալպիական փարթամ մարգագետիններում: Իսկ ամենից շատ նա հայտնի դարձավ պիոներների մի նախաձեռնությունից հետո...

Կար մի գորշ քար, սովորական գորշ քար, որը ցցված էր ժլատ, անբերրի հողում:

Փչում էին քամիները, աճում ու մեռնում էին ծառերը, իսկ այդ քարը մնում էր կանգնած. այդ անխորտակելի գորշ քարը, որ երկու գյուղ էր իրարից բաժանում: Այդ գյուղերը կոչվում էին Վեցշեն և Մեծշեն: Թեև բարձր էր հնչում դրանց անունը, բայց իրականում դրանք մեծ գյուղեր չէին. ունեին երկուերեք տասնյակ հողե հարթ կտուրներով տներ, ինչպիսիները մեր լեռներում կարելի է տեսնել ամենուրեք: Այդ քարի պատճառով վաղուց ի վեր հարևան գյուղերի միջև վեճ ու կռիվ էր ծագում: Ճիշտն ասած, վիճում էին ոչ թե քարի, այլ սահմանի համար: Ասում են՝ բարկանում են ձիու վրա, բայց թամբին են խփում:

Շատ էին աղքատ այդ գյուղերը: Մեծշենի և Վեցշենի հողերի մի ծայրից մյուսը կարելի էր վազել մի շնչով. իսկ այդ քարը ցցված էր ուղիղ մեծշենցիների քթի տակ: Վեցշենի արտերը կպած էին հարևանների տներին: Երբ մարդիկ դուրս էին գալիս իրենց հյուղերից, նրանց վրա գոռում էին. «Է՜յ, ետ դարձիր, չե՞ս տեսնում, որ ուրիշի հողն ես տրորում»: Ո՞ւմ էր դա հաճելի: Հարևանների միջև ո՛չ հաշտություն կար, ո՛չ համաձայնություն: Այդ անարդարությունից ի միջի այլոց, օգտվում էին շատ անազնիվ մարդիկ: Հատկապես աչքի էր ընկնում Ստեփանոս անունով ցարական մի պաշտոնյա: Շատ ճարպիկն էր այդ աղվեսը. մերթ մեկի կողմն էր անցնում, մերթ մյուսի, մերթ ձեռքը մեծշենցիների գրպանն էր տանում, մերթ՝ վեցշենցիների:

Հիմա ի՞նչ ժամանակն է, որ մեկ-մեկ հիշենք Մեծշենի և Վեցշենի միջև այդ անարդարացի սահմանի պատճառով ծագած վեճերն ու կռիվները: Հնում, երբ հողի տերերը չարագործ հարուստներն էին, ինչեր ասես, որ չէին պատահում:

Գորշ քարը հարևան գյուղերի միջև կանգնած էր և մեր օրերում, բայց նրա շուրջն այլ էր կյանքը, այլ երգեր էին երգվում:



Միացյալ ուժերով մեծշենցիներն ու վեցշենցիները դպրոց կառուցեցին. առանձինառանձին չէին կարողանա: Էլեկտրաղաց էլ կառուցեցին: Հիդրոկայանի շինարարությունն էլ միասին կատարեցին: Հապա առօրյա կյանքո՞ւմ: Մերթ մեծշենցիներն են վեցշենցիներից փոխարինաբար սերմացու ցորեն ու կարտոֆիլ վերցնում, մերթ վեցշենցիներն են դիմում մեծշենցիների օգնությանը:

Երեխաներն արդեն դպրոց են գնում որ-

պես մտերիմ ընկերներ, կազմակերպում են պիոներական ընդհանուր խարույկներ, երկու գյուղի համար ընտրվել է մի գյուղսովետ։ Բայց դարձյալ, երբ երկու գյուղերի կոլտնտեսությունների առաջ դրվեց միացման հարցը, ապա վեցշենցիներն ու մեծշենցիները տատանվեցին։ Հարևանները վախենում էին՝ չլինի՞ թե կողմերից մեկը մյուսին խաբի։

***

Պիոներները հերթական հավաքույթ արեցին։

— Երեխանե՛ր, եկեք նվեր պատրաստենք,— առաջարկեց Սուրենը՝ կլոր դեմքով գանգրահեր մի տղա, Վեցշենի կոլտնտեսության նախագահի որդին,— մինչև մեր հայրերը որոշեն միանալ...

Նա մի վայրկյան կանգ առավ, խոշոր, երազուն աչքերը հառեց իրեն լուռ լսող ընկերներին։

— Մինչև մեր հայրերը որոշեն միանալ,— կրկնեց նա,— Վեցշենից մինչև Մեծշեն եկեք ճանապարհը ծառապատենք։

Տղայի կլոր դեմքը փայլում էր երջանկությունից։

— Պատկերացրեք,— շարունակեց նա,— մեր հայրերը գալիս են այն ժողովից, որտեղ միանալու որոշում են ընդունել, իսկ մենք արդեն միացել ենք։

— Կանաչ ծառուղի ի պատիվ մեր կոլտնտեսությունների միացմա՛ն,— բացականչեց Վարդգեսը՝ Մեծշենի կոլտնտեսության նախագահի որդին, Սուրենի մտերիմ ընկերը.— ի՜նչ լավ կլինի, հը՞, տղանե՛ր։ Ես կողմնակից եմ այդ նվերին,— եզրափակեց նա։

Պիոներները խմբվեցին իրենց ղեկավարների շուրջը և հետաքրքրությամբ նայեցին նրանց, կարծես առաջին անգամ էին տեսնում։ Երկվորյակների պես նրանք նման էին իրար. երկուսն էլ բարձրահասակ էին, երկուսի քիթն էլ արևից այրվել էր, երկուսն էլ չարաճճի, կրակոտ աչքեր ունեին և կլոր, առողջ դեմքեր։ Տարբերությունն այն էր, որ Սուրենն ուներ խարտյաշ գանգուրներ, իսկ Վարդգեսը՝ գիշերվա պես թուխ մազեր։

Ամենից առաջ խոսեց Վարդուշը՝ բաց գույնի երկար հյուսքերով մի փոքրիկ աղջիկ։

— Տեսեք, հա՜, տղանե՛ր,— ասաց նա, — այնպես արեք, որ մենք էլ մասնակցենք, թե չէ հենց որ բահերով գործ եք անում, մեզ բանի տեղ չեք դնում։

Նա վիրավորված նայեց տղաներին։

— Դա անարդարացի է,— հաստատեց նրա խոսքը մի աղջիկ,— մենք ձեզանից վա՞տ գիտենք բուսաբանությունը։ Ես հաշվել եմ. մենք՝ աղջիկներս նույնիսկ ավելի շատ հինգեր ունենք, քան դուք։ Այնպես որ առանձնապես մի՛ հպարտացեք։

Նա հաղթական հայացք նետեց տղաներին։

— Իսկ ինչ վերաբերում է գործին, մեզ համար մի՛ անհանգստացեք։ Փափկասուն չենք, կարող ենք և՛ փոսեր փորել, և՛ պատվաստել։

— Պետք է նկատի ունենալ աղջիկների արդարացի բնադատությունը,— ասաց բարձր դասարանցիներից մեկը՝ հայտնի չէ վեցշենցի, թե մեծշենցի,— իսկ ինչ վերաբերում է Սուրենի առաջարկին... ապա, ընկերնե՛ր, խոսելն ուղղակի ավելորդ է։

Նա ժպտաց և նշանակալից նայեց ընկերներին։

— Եկեք մեր շնորհակալությունը հայտնենք այդ առաջարկի համար։ Եկեք ձեռքերի վրա բարձրացնենք Սուրենին,— եզրափակեց նա հանդիսավոր ձևով։

Բոլորը ձեռքերը մեկնեցին Սուրենի կողմը, բայց հնչեց փրկարար զանգը և տղաներն ու աղջիկները վազեցին դեպի իրենց դասարանները։

Հետևյալ օրը պիոներները հավաքվեցին գյուղսովետի փոքրիկ բակում, հարյուրամյա թթենու հովանու տակ։ Բանակցությունների համար դուրս եկավ ինքը՝ գյուղսովետի նախագահ քեռի Սամվելը։ Քեռի Սամվելը բարձրահասակ էր, այնքա՜ն բարձրահասակ, որ մարդկանց հետ խոսելիս նրանց այնպես էր նայում, ասես դիտում էր ջրհորի խորքը։ Նա արդեն տարիքն առած մարդ էր, բայց կնճիռները նրա ճակատը հատում էին ոչ թե լայնքով, այլ վերից-վար։ Երբ նա ծիծաղում

էր, կնճիռները հարթվում էին, ջնջվում և նրա դեմքը դառնում երիտասարդի դեմք։

Քեռի Սամվելը լսեց պիոներների պատմությունը, ժպիտը լուսավորեց նրա խոշոր դեմքը, կնճիռները չքացան։

— Լավ բան եք մտածել, տղե՛րք,— ասաց քեռի Սամվելը,— ես ոչ միայն հավանություն եմ տալիս, այլև թույլատրում եմ օգտվել կայծակ-բահերից։— Նա նայեց իր փոքրիկ զրուցակիցների հպարտությունից շողշողացող դեմքերին։— Այս բահերը վերջերս ստացանք մեծ քաղաքից՝ Մոսկվայից,— շարունակեց քեռի Սամվելը,— դրանք մեծ գործերի համար են, և դուք առաջինն եք փորձելու։

Նա հանեց բլոկնոտը, ինչ-որ բան գրեց, պոկեց գրված թերթը, տվեց պիոներներին։

— Գնացեք պահեստ,— ասաց նա,— ցույց տվեք այս թուղթը և ձեզ բահեր կտան։

Պահեստից կայծակ-բահերը նրանք ստացան առանց դժվարությունների։ Պետք էր մի տեղից ձեռք բերել նաև տնկիներ։ Պիոներները որոշեցին դիմել քեռի Աթանեսի օգնությանը։ Քեռի Աթանեսը Սամվելի նման՝ բարձրահասակ մարդ էր։ Նա պարտիական կազմակերպության քարտուղարն էր։

— Շատ բարի՛,— ասաց նա,— լավ բան եք մտածել։ Միայն թե ուշ չէ՞, տղանե՛ր, չէ՞ որ գարունը վերջանալու վրա է։

Քեռի Աթանեսը նայեց հուրհրան արևին. հետո նայեց պիոներներին, մտախոհ զննելով նրանց վերից վար, ինչպես փոքրիկ ճուտերի։

— Լավ,— ասաց վերջապես քարտուղարը,— ես ճանաչում եմ մի այգեպանի։ Նրան ասում են Գալուստ պապի։ Միչուրինի հետ ծանոթ է եղել, խելահաս ծերունի է, ամբողջ օկրուգում հայտնի է, որպես միչուրինական այգեգործ։ Մի գուցե նա՞ օգնի ձեզ։

Նա թղթի վրա գծեց, թե ինչպես գտնել հայտնի այգեպանին և թուղթը տվեց պիոներներին։ Պիոներներն էլ նայեցին այդ քարտեզին և ծոծրակները քորեցին. քեռի Գալուստն ապրում էր մեծ սարի ետևում։



— Գնացեք իմ ձիերով,— ասաց կոլխոզի ձիապանը,— այդպիսի գործի համար չեմ ափսոսա իմ սաներին։

Նա ախոռից բերեց լավագույն նժույգները։ Կայծակ-բահերը ձեռքներին՝ պիոներները սլացան ցույց տված ուղղությամբ։

— Ես ունեմ այդպիսի տնկիներ,— ասաց հայտնի այգեպանը։— Հենց Միչուրինից եմ վերցրել։ Տարեք և տնկեք։

Այս ասելով, Գալուստ պապը պիոներների խումբը տարավ մատղաշ տնկիների միջով, ցույց տալով, թե դրանցից որը հանեն...

Աշխատանքի եռուն պահին ծառուղու վրա հայտնվեց քեռի Սամվելը, հետո՝ Աթանեսը: Գյուղսովետի նախագահը և պարտկազմակերպության քարտուղարը դիտում էին պիոներների համերաշխ աշխատանքը, ժպտում էին, պատկերացնելով ապագա ծառուղին: Ոչ հեռու կանգնած էր ֆերմայից վերադարձած ձիապանը, որը պիոներներին նայելով, նույնպես ժպտում էր:

Լուսաբացին, երբ վեցշենցիներն ու մեծշենցիները կայացրին ուրախալի որոշումը, և երկու նախագահները սրբելով իրենց ճակատի քրտինքը, դուրս եկան թարմ օդ շնչելու և միաժամանակ աչքի անցկացնելու արդեն միավորված տնտեսությունը, ամեն ինչ արդեն պատրաստ էր: Ճանապարհի եզրերին, ասես նրանց ողջունելու համար, շարքի էին կանգնած նորատունկ ծառերը: Դալար ճյուղերում դայլայլում էին անհամար թռչուններ:

— Ա՛յ, ապրեն մեր տղանե՜րը,— ասացին նրանք, հիացած դիտելով ծառուղին:

Սուրենի և նրա ընկերների երազն իրականացավ: Վեցշենից մինչև Մեծշեն ձգվող ճանապարհը ուրախ դարձավ: Տնկված ծառերը ամրացել էին: Նրանց կատարները գանգուր պսակների էին նման: Իսկ այն տնկիները, որ չէին բռնել, հետևյալ գարնանը փոխարինվեցին նորերով. և ինչ որ մինչ այժմ աչքաթող էին արել, այժմ կատարեցին: Ստացվեց մի կանաչ ծառուղի, որը հիացմունք էր պատճառում ողջ կոլտնտեսությանը:

Եվ ի՜նչ լավ է զբոսնել ամռանն այդ ծառուղիով: Ե՛վ անձրևի տակ չես թրջվի, և՛ արևը չի այրի, և՛ փոշուց կպաշտպանվես. բայց ավելի հաճելի է այդ ծառուղիով զբոսնել լուսնյակ գիշերները, երբ սովորաբար սկսում են դայլայլել սոխակները:

Վեցշենի և Մեծշենի համերաշխ կոլտնտեսականները մինչև այսօր էլ հաճախ են հիշում պիոներների այդ հրաշալի նվերը, շնորհակալություն են հայտնում նրանց՝ և՛ ծառերի ստվերի, և՛ սոխակների, և՛ այն բանի համար, որ կոլտնտեսությունում զգալի կերպով բարձրացել է հացի բերքատվությունը, քանի որ ծառուղու կենդանի պարիսպը ձյունը պահում է դաշտերում:

— Հապա գորշ քա՞րը,— կհարցնեք դուք:

Այն վայրում, որտեղ այդ քարն էր ընկած, այժմ դպրոց է և մանկական սպորտհրապարակ: Գորշ քարից հետք էլ չի մնացել: Այդ քարը չքացավ անարդարացի սահմանի հետ միասին: Չքացավ. բայց ոչ բոլորովին...

Մեծշենի և Վեցշենի միջև թթենիների այգիների խորքում, գիշեր-ցերեկ լսվում է էլեկտրաղացի աղմուկը: Աղացպանի գործը դժվար չէ. ձագարի մեջ լցնում ես ցորենը և խկույն ալյուր ստանում: Դողում է երկաթյա ակոսը, որտեղից դուրս է գալիս ալյուրի սպիտակ, լայն հոսանքը: Եթե ձեռք տաս, կայրի: Դա գորշ քարի աշխատանքն է, այն քարի, որը մի ժամանակ երկու գյուղ իրարից բաժանում էր: Այդ քարը վաղուց է, ինչ ապրում է այլ կյանքով. աղում է կոլտնտեսության հացահատիկը, կատարում օգտակար աշխատանք:

Այստեղ կվերջանար մեր պատմությունը, եթե չգային հարևան կոլտնտեսության երեխաները, որպեսզի տեսնեն Վեցշենի և Մեծշենի պիոներների կատարածը: Հյուրերը դիտեցին ծառուղին, հաճույքից լեզուները ծլպլացրին:

— Լա՜վ է,— ասացին նրանք:

Այդ օրվանից հարևան կոլտնտեսության պիոներները շարունակ գալիս էին դիտելու ծառուղին:

— Մենք ուզում ենք ձեր կանաչ ճանապարհը շարունակել մինչև մեր գյուղը, բայց ժամանակն անցել է, ի՞նչ անենք,— ասացին նրանք մի անգամ:

— Պետք է խոսել Գալուստ պապի հետ,— պատասխանեցին նրանք:

Սուրենը և Վարդգեսը հյուրերին տարան այգեպանի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո նա իր մոտ կանչեց Սուրենին և Վարդգեսին:

— Ձեր հարևանները խնդրեցին այնպիսի

տնկիներ, որ հնարավոր լինի տնկել և՛ ամռանը, և՛ ձմռանը: Այդպիսի տնկիներ ես պատրաստել եմ, տարե՛ք:

Երկու բարձրահասակ տղաներ՝ մեկը խարտյաշ գանգուրներով, մյուսը գիշերվա պես Թուխ մազերով, խնամքով փաթաթեցին տնկիները և սլացան Հարևան գյուղը. իսկ



այնտեղ փոսերն արդեն պատրաստ են, սպասում են արտասովոր տնկիներին: Եվ ծառուղին շարունակվեց մինչև Հարևան գյուղը: Այժմ Վեցշենից և Մեծշենից մինչև Հարևան գյուղը կարելի է գնալ առանց շոգելու:

Մի շաբաթ էլ չէր անցել, երբ Նախաձեռնող պիոներների մոտ մի ձիավոր եկավ. կարմիր վզկապը վառվում էր նրա կրծքին:

— Ես եկել եմ Զովաշենից,— ասաց ձիավորը:— Կանաչ ծառուղին եկել, հասել է մեզ: Ուզում ենք շարունակել: Հրաշալի տնկիներ ունենք, որ բռնում և աճում են տարվա բոլոր եղանակներին: Այդ տնկիները մեզ իրենց տնկարանից նվիրել են մեր հարևանները՝ Աղբրակի պիոներները: Լավ տնկիներ են, խոսք չկա, բայց վախենում են մեր հորդ անձրևներից: Մերոնք ինձ ուղարկել են, որ հարցնեմ, թե կարո՞ղ եք արդյոք մեզ օգնել այս գործում:

— Պետք է խոսել Գալուստ պապի հետ,— պատասխանեցին նրան:

Սուրենն ու Վարդգեսը զովաշենցի հյուրին տարան այգեպանի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո նա իր մոտ կանչեց Սուրենին ու Վարդգեսին:

— Ձեր զովաշենցի ընկերներն այնպիսի տնկիներ էին ուզում, որ չվախենան առատ անձրևներից: Ահա այդ տնկիները: Տարեք նրանց:

Երկու բարձրահասակ տղաներ՝ մեկը խարտյաշ գանգուրներով, մյուսը՝ գիշերվա պես Թուխ մազերով, տնկիները խնամքով փաթաթեցին և արագավազ նժույգներ հեծած սլացան դեպի Զովաշեն:

Վերադարձան, բայց իրենց ուսերից դեռ ևս չէին իջեցրել ճանապարհորդական պայուսակները, երբ լսվեց Արևառատ գյուղից եկած նժույգների դոփյունը:

— Կանաչ ծառուղին եկել հասել է մեզ,— ասաց ձիավորը, որի կրծքին նույնպես վառվում էր պիոներական վզկապը,— մենք ուզում ենք շարունակել, բայց այն տնկիները, որ մեզ Զովաշենի պիոներներն են նվիրել, չեն դիմանում մեր տափաստանի չոր կլիմային... Ինձ խնդրել են, որ հարցնեմ, թե կարո՞ղ եք արդյոք մեզ օգնել այս գործում...

Սուրենն ու Վարդգեսը Արևառատից եկած հյուրին տարան այգեպանի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո նա իր մոտ կանչեց Սուրենին ու Վարդգեսին:

— Ձեր արևառատցի ընկերները այնպիսի տնկիներ էին ուզում, որ չվախենան

*նրանց բնական պայմաններից: Ահա այդ տնկիները տվեք նրանց:*

*Երկու ընկերն այս անգամ էլ փաթաթեցին տնկիները և արագավազ ձիերով սլացան դեպի Արևառատ գյուղը:*

*Մի ամիս էլ չէր անցել, երբ հանկարծ հայտնվեց մի օդանավ: Ծաղկած դաշտերի և այգիների վրա պտույտ գործելով, օդանավը վայրէջք կատարեց: Այնտեղից դուրս եկան երեք պիոներ:*

*— Ձեզանից ովքե՞ր են Սուրենն ու Վարդգեսը,— հարցրին նրանք:*

*Հավաքված երեխաների բազմության միջից, օդանավի աղմուկը լսելուն պես, դուրս եկան բարձրահասակ, իրար շատ նման երկու տղա՝ մեկը խարտյաշ գանգուրներով, մյուսը՝ գիշերվա պես թուխ մազերով:*

*Հյուրերը գրկեցին նրանց և թափահարեցին նրանց ձեռքերը: Հետո նրանք գրկեցին և համբուրեցին բոլորին:*

*— Մենք Ձյունակերտից ենք եկել,— վերջապես ասացին հյուրերը, — կանաչ ծառուղին եկել հասել է մեզ: Մենք ուզում ենք շարունակել, բայց հարևաններից վերցրած տնկիները վախենում են մեր սառնամանիքներից: Մենք լսել ենք, որ բոլորին օգնել եք: Արդյոք մեզ էլ չե՞ք օգնի:*

*Ձյունակերտցի հյուրերին տարան այգեպանի մոտ, իսկ մի քանի օր հետո Սուրենն ու Վարդգեսը փոստային օդանավով թռան Ձյունակերտ, իրենց հետ տանելով այնպիսի տնկիներ, որոնք սառնամանիքներից չեն վախենում:*

*Այնուհետև մեծշենցի և վեցշենցի պիոներների հասցեով նամակ ստացվեց Սպիտակի շրջանից: Սպիտակի պիոներները գրել էին, որ կանաչ ծառուղին հասել է իրենց լեռները: Նրանք շնորհակալություն էին հայտնում Գալուստ պապին՝ հրաշալի տնկիների, իսկ պիոներներին՝ հիանալի նախաձեռնության համար:*

*Այսպիսով, կանաչ ծառուղին էստաֆետայի նման գյուղից գյուղ անցավ, քաղաքից քաղաք, շրջանից շրջան... Եվ հիմա որտեղ հայտնվում է նա, հնչում է սոխակների գեղգեղանքը և աղբյուրի նման բխում է հրաշալի կյանքը:*

---

# ՇԻՆԱՐԱՐՆԵՐԸ

*ԱՂԱՎՆԻ* *Նկ. Հ. ՔԱՑԱԿՅԱՆԻ*

Քաղսովետը Երևանի,
Հին խրճիթները քանդեց
Ու փոխարենը՝ հինգ հարկանի
Այս նոր տունը կառուցեց:

Մի մասն էլ այդ տարածության
Դարձրել է բակ ու այգի,
Որ խաղալու տեղ ունենան
Հերոսները այս երգի:

Ահա կիտել են մեր բակում
Մի բուռ ավազ, մի քիչ կիր,
Իսկ Արամը մի անկյունում
Շաղ է տվել թղթերն իր:

Ճարտարապետ է իբր թե,
Հատակագիծն է գծում.
Թեև Արամն անգիր գիտե
Տունն ինչպես են կառուցում:

Բանվորներ են Սոսն ու Աննան,
Արտավազդն էլ՝ որմնադիր,
Իսկ Վաչիկը յոթ տարեկան՝
Քարտաշների բրիգադիր:

Անահիտը ներկարար է,
Սերժն ու Շողիկն էլ՝ հսկիչ,
Իսկ պստլիկ մեր Գոհարը՝
Ապագայի բնակիչ:

Մեկ ժամ հետո մեր եռանդուն
Շինարարներ փոքրիկ,
Կառուցում են ու ավարտում
Իրենց տունը գեղեցիկ:

Եվ իրեր են փոխադրում
Բնակիչները փոքրիկ.
Սոսը փայտե ձին է բերում,
Իսկ Գոհարը՝ չորս տիկնիկ:



Կանգնած է նա վառ, վարդագույն,
Թեև պատը մի քիչ թեք,
Բայց ո՞վ կասի Երևանում
Տաս հարկանի տուն չունենք:

Իսկ իմ մասին կասեմ մի բան՝
Մնացի տանն իմ նախկին.
Սենյակները այդ «հսկա» տան
Ինձ համար շա՜տ փոքր էին...

# ԲՈԼՈՐԻՆՆ Է

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Առավոտից մինչև ուշ երեկո քեռի Աշոտը հսկում էր այգին: Փշոտ ձեռնափայտը ձեռքին նա շրջում էր կարմրագույն ավազով ծածկված ծառուղիներով, մեկ-մեկ դիտում կանաչ թփերը, ծառերի մոտ՝ վահանների վրա փակցրած պլակատներն ու նկարները, իսկ ամենից շատ ծաղկեթմբերը, որոնց ամեն մի ծաղկին, ո՞վ գիտի, քանի զույգ մանկական աչքեր էին հառած՝ հափշտակությամբ ու ցանկությամբ լի:*

*— Ա՛յ տղա, խելո՛ք, է՜յ...*

*Մանկական այգու ամենօրյա այցելուները շատ լավ էին ճանաչում քեռի Աշոտին: Նրանցից շատերը այգու կարուսելից, լողանալու ավազանից, գեղեցիկ շատրվաններից և նույնիսկ ծաղիկներից շատ քեռի Աշոտի պատմություններն էին սիրում:*

*Երբ այգում ամեն ինչ կանոնավոր էր լինում, երբ տղաներից ոչ մեկը չէր վիճում ընկերոջ հետ կարուսելի ձիուն նստելու հերթի համար, կամ որևէ մեկը չէր թռցնում թմբեզրին բուսած մեխակը, քեռի Աշոտը գոհունակությամբ ժպտում էր, նստում հանդիպած նստարանին, փշոտ, հաստ ձեռնափայտը հենում ծնկանն ու հանգստանում.*

*— Օ՜ֆ...*

Երեխաները սիրում էին այդ ժամանակ շրջապատել նրան։ Գալիս էին ու մեկ-մեկ բարևում։

— Բարև, քեռի Աշոտ։

— Ո՞նց ես, քեռի՛ Աշոտ։

— Քեռի՛ Աշոտ, ի՞նչ լավ այգի է, չէ՞։

Վերջին հարցի վրա քեռի Աշոտն աշխուժանում էր.

— Բա ո՞նց, իհարկե՝ լավ այգի է։ Որ ես էլ ձեզ պես պստիկ էի...

Եվ սկսում է պատմել։ Պատմում էր դանդաղ, ժպտալով, ու լսողների աչքերի առաջ բացվում էր դառն ու կսկծալի անցյալը...

— Չէին թողնում, բալեք, չէին թողնում։ Դե՜, իմ հայրիկը հասարակ չուստ կարող էր, իսկ այգին մտնելու համար շատ փող էր հարկավոր։ Ես ու ընկերս առավոտից երեկո ցանկապատի առաջ կանգնած ներս էինք նայում, իսկ ներսում զբոսնում էին սիրուն շորեր հագած տղաներ ու աղջիկներ՝ իրենց ծնողների հետ։ Նրանք հարուստներ էին...

Հանկարծ քեռի Աշոտի հայացքն ընկնում էր մոտիկ ծաղկեթմբին։



— Ա՛յ տղա, խելո՛ք, է՜յ...

Ու գաղտագողի ծաղկեթմբին մոտեցած չարաճճին իսկույն ձեռքը ետ էր քաշում սպիտակ մեխակից։

***

— Այս իմն է, այս էլ, ուզում եմ, որ այս էլ իմը լինի,— այսպես էր խոսում Կարենը տանը։

Եթե հայրիկը շուկայից կեռաս էր բերում, Կարենն իսկույն հայտարարում էր.

— Իմն է։

Եթե մայրիկը տետրակներ էր գնում Գայանեի և Կարենի համար, Կարենն էլի պահանջում էր.

— Բոլո՜րն ինձ։

Եվ Գայանեից խլում էր բոլոր տետրակները. չնայած, որ այդքան տետրակ նրան հարկավոր էլ չէր։

Կարենը միայն մի ընկեր ուներ՝ Ռուբիկ անունով։ Նրանք միասին էին դասի գնում։ Բակում ֆուտբոլի թիմ էին կազմակերպել և երկուսն էլ խաղում էին։ Երկուսն էլ ուզում էին դարպասապահ դառնալ, դրա համար միշտ վիճում էին և՛ իրար հետ, և՛ մյուսների։ Իսկ երբ Կարենը շատ էր տաքանում,

*վերցնում էր գնդակն ու արհամարհանքով ասում.*

*— Կարող եք ցրվել, չէ՞ որ գնդակն իմն է։*

*Ու գնդակը տանում էր։*

*****

*Առաջին անգամ այգի եկավ Գայանեի և մայրիկի հետ։ Կարենը շատ հավանեց այգին, միայն մի բան նրան դուր չեկավ. երեխաներ շատ կային։ Նրանցից ամեն մեկը Կարենին հակառակորդ էր թվում։ «Քանի՜ տղայի հետ պիտի վիճել կարուսելի ձիուկին տիրանալու համար, քանիսի հետ պիտի կռվել ամենալավ ծաղիկը պոկելու համար», մտածում էր նա։*

*— Սիրուն ծաղիկներ են չէ՞,— ասաց մայրիկը։*

*— Ի՞նչ օգուտ,— հառաչեց Կարենը։*

*Մայրիկն ու Գայանեն զարմացան.*

*— Ո՞նց թե՝ ինչ օգուտ...*

*— Դե՜, չէ՞ որ մերը չեն,— բացատրեց իր միտքը Կարենը։*

*— Հիմար բաներ ես ասում,— բարկացավ մայրիկը,— հապա ո՞ւմն են, որ մերը չեն։ Այգին բոլորինն է։*

*Հանկարծ Կարենը մի գեղեցիկ ծաղիկ նկատեց։ Մինչ մայրիկը կսաստեր, վրա թռավ ու ծաղիկը պոկեց։*

*— Ա՛յ տղա, խելո՛ք, է՜յ,— լսվեց քեռի Աշոտի ձայնը։ Ծերունին դեպի ծաղկեթումբն շտապեց։— Բա էդպիսի բան կանե՞ն...*

*Կարենը շփոթվեց.*

*— Այս մեկը ինձ չի՞ հասնում։ Տեսեք, թե դեռ ինչքա՜ն ծաղիկ կա։*

*— Իսկ ինչքա՜ն տղաներ կան,— հանդիմանեց քեռի Աշոտը.— եթե ամեն մեկը մի ծաղիկ պոկի...*

*— Է՜, իմ ի՞նչ գործն է՝ թող պոկի. ամեն մարդ թող իր բաժին ծաղիկը պոկի...*

*Մինչ նրանք խոսում էին, այգու երեխաների խումբը շրջապատել էր նրանց։*

*— Տես է՜, ի՞նչ սեփականատերն է,— ասաց մի տղա, որ կարմիր մայկա էր հագել։ Նրա ձեռքին մի ֆուտբոլի գնդակ կար, իսկ մայկայի կրծքին սպիտակ ներկով 11 էր գրված։ Երևում էր, որ տղան նույնպես ֆուտբոլիստ է։*

*— Դու մի՛ գոռա,— հանգիստ պատասխանեց տղան։*

*— Մի՛ փչվի, կպայթես,— ծաղրեց մի փոքրիկ աղջիկ։*

*— Իմ բաժի՜նը,— ծոր տվեց մի ուրիշը, Կարենի ձայնին նմանեցնելով։*

*Այդ ժամանակ քեռի Աշոտն ասաց.*

*— Սպասեցե՜ք, տղանե՛ր, այս տղան մի բան ճիշտ է ասում։ Այգուց սա էլ բաժին ունի և այն էլ ոչ միայն ծաղիկ, այլև մի փոքրիկ կտոր տեղ։ Ինչ կա որ, մարդուն դուր չի գալիս մեր կոլեկտիվը, նա իր բաժինն է ուզում. իսկ մենք ագահ չենք, մենք այս տղային ծաղկից բացի ամբողջ կես նստարան կտանք, չնայած որ նրան այդքան չի հասնում, չէ՞ որ մենք շատ ենք, այնպես չէ՞։*

*— Շա՜տ ենք,— միաբերան պատասխանեցին բոլորը։*

*— Բայց կես նստարան կտա՞նք,— շարունակեց ծերունին,— ա՛յ, հենց թեկուզ այս նստարանի կեսը։— Նա Կարենի ձեռքը բռնելով նրան տարավ դեպի մոտիկ նստարանը։— Մի կավիճ տվեք,— ասաց նա և «ֆուտբոլիստից» կավիճ վերցնելով նստարանի վրա գիծ քաշեց.— ահա այս մասն էլ է քոնը։ Կարող ես վրան նստել, կամ կանգնել ու նայել քո ծաղկին։ Բայց մեր ծաղիկներին չնայես, մեր նստարաններին չնստես, մեր ծառուղիներումման չգաս։*

*Ասաց ու հանգիստ նստեց նստարանի մյուս կեսին, փշոտ ձեռնափայտը ծնկանը դնելով։ Երեխաները ծիծաղելով ցրվեցին. մայրիկն ու Գայանեն էլ նրանց հետ։ Մնացին քեռի Աշոտն ու Կարենը։*

*Կարենը նախ որոշեց անտարբեր ձևանալ։ Նստեց նստարանին ու սկսեց իր ծաղկից հոտ քաշել։*

*— Շատ հարկավորս է,— փնթփնթաց նա,— իսկի չեմ էլ նայի ձեր ծաղիկներին։*

*Բայց, տարօրինակ է, հենց այդ վայր-*

կյանին նրան թվաց, որ նստարանի առջև փռված ծաղիկներից սիրուն բան աշխարհում չկա։ Նրա մեջ սաստիկ ցանկություն առաջացավ նայել ծաղիկներին, շրջել ծառուղիներով, ավազի վրա երկանիվ սայլակ քշել. բայց նա քաշվում էր գլուխը բարձրացնել։ Նրան թվում էր, թե քեռի Աշոտը լարված ուշադրությամբ իրեն է հետևում. իսկ, հակառակի պես, ձեռքի ծաղիկն էլ թառամում էր...



Գլուխը դաղտագողի բարձրացրեց։ Մայրիկը դիմացի նստարանին նստած թերթ էր կարդում, իսկ քիչ հեռու երեխաները վոլեյբոլ էին խաղում. նրանց մեջ էին Գայանեն ու «ֆուտբոլիստը»։

Ձանձրալի էր։ Ինքն էլ էր ուզում գնդակ խաղալ, վազվզել. բայց ինքն իր բաժինն արդեն ստացել էր. կես նստարան և այս թառամող ծաղիկը։

Կամաց-կամաց ցուցադրական անտարբերությունն անցավ, աչքերը լցվեցին։ Նա զգաց, որ ինքն այդպես այլևս չի կարող մնալ, որ ինքը չի ուզում մենակ լինել՝ այս կես նստարանին նստած, այս թառամող ծաղիկը ձեռքին։ Զգաց, որ այգին ամբողջապես բոլորինն է, ամեն մեկինը, դրա համար էլ ամեն մեկը պիտի չպոկի ծաղիկները, պիտի չփչացնի ծառուղիներն ու նստարանները։ Ամեն մեկը բոլորի հետ պիտի խաղա բոլորի այգում։

— Քեռի՜,— լացակումած ասաց նա։

Քեռի Աշոտը գլուխը բարձրացրեց.

— Լավ, լավ, գնա խաղալու,— ժպտալով ասաց նա։

Կարենը վեր թռավ տեղից։

— Սպասի՛ր,— կանգնեցրեց ծերունին.— իսկ ծաղիկներն ո՞ւմն են, այգին ո՞ւմն է։

— Բոլորինն, բոլորինն,— ուրախ պատասխանեց Կարենը։

Գնդակ խաղացողներն ամեն ինչ մոռացած նրան խաղի մեջ ընդունեցին. իսկ նստարանի վրա քեռի Աշոտի մոտ ընկած թառամում էր ծաղիկը, որ այժմ ոչոքինը չէր։

# ԵԿԵՔ ԳՆԱՆՔ ԼՈՂԱՆԱՆՔ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Ընկերներով մեր բակում
Մենք խաղում ենք, կատակում.
Իսկ քիչ հեռու՝ չինչ-հստակ,
Աղմուկով լի մի գետակ
Գիշեր-ցերեկ կարկաչում
Իր զով գիրկն է մեզ կանչում:

Սուզվում ավազ ենք հանում,
«Ձուկ» ենք խաղում և գնդակ
Եվ այլ խաղեր շատ տեսակ:

Երբ հոգնում ենք մենք ջրից
Կամ մեր ուրախ խաղերից,



Նկ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Երբ արևը ծիծաղում
Ծաղիկների հետ խաղում,
Ու նեղում է շոգը խիստ,
Մենք դառնում ենք անհանգիստ՝
Թողնում ենք խաղն ու արագ
Վազ ենք տալիս դեպ ձորակ:

Մեր խաղերին չկա վերջ.
Գետակի պաղ ջրի մեջ
Լողի մրցում ենք անում,

Ելնում, մանրիկ ավազում
Պառկում ենք կամ վազվզում,
Հետո նորից զով հովին
Ջուրն ենք լցվում խմբովին:

Ջուրը կյանք է, ջուրը ուժ,
Ջուրը մայր է քաղցրանուշ,
Ով ուզում է մեզ նման
Լինել առողջ ու աշխույժ,
Ամռան շոգին թող գա նա
Մեզ հետ ջրում լողանա:

# ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ

Ֆոտո Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

*Ջոկատավար Սիլվան դուրս գալով ճամբարի խորհրդից, անմիջապես հավաքեց պիոներներին և հաղորդեց վաղուց սպասվող ուրախ լուրը։*

*— Այսօր եղբայրական Ադրբեջանից մեզ մոտ հանգստանալու են գալիս երեսունչորս պիոներ։ Հեռագիրն ստացվել է գիշերը. երեք-չորս ժամ հետո հյուրերը կլինեն Մաղկաձորում։ Նրանց դիմավորման գործը ճամբարի խորհուրդը հանձնարարել է մեր ջոկատին։*

*Անսահման ուրախությամբ համակված, պիոներները մի շարք առաջարկություններ արեցին, հյուրերին լավ դիմավորելու համար և անմիջապես գնացին անտառ ծաղկեփնջեր բերելու։*

*Երբ Կոմունալ-բնակարանային շինարարության միության ճամբարականները փողային նվագախմբի ուղեկցությամբ և ծաղկեփնջերով դուրս եկան ճամբարից, նրանց միացան հարևան ճամբարների մի քանի ջոկատներ։ Դուրս գալով մանկական քաղաքից, նրանք շարվեցին խճուղու աջ և ձախ կողմերում։*

*Օղակավար Աշոտը, որ բլրի գագաթից դիտում էր ճանապարհը, փոքրիկ դրոշակով ազդանշան տվեց։*

*— Գալի՜ս են, գալի՜ս,— շարքերով անցան ուրախ ու անհամբեր երեխաների ձայները։*

*Առջևում կանգնած դրոշակակիրը բարձրացրեց դրուժինայի կարմիր դրոշը։ Փողային նվագախումբը նվագեց պիոներների քայլերգը։ Հյուրերին բերող մեքենաները կանգ առան։ Օդը թնդաց երկու կողմից լսվող բարձրագոչ ուռաներից։*

*— Բարի գալո՜ւստ եղբայրական Ադրբեջանից եկած հյուրերին,— մեքենայի վրա Թռչելով դուրս եկավ Լենան և ծաղկեփունջը առաջինը նվիրեց հյուրերին։*

*Ուռաների ու ծափերի տարափի ներքո հյուրերն իջան մեքենաներից և ճամբարականներից վերցնելով ծաղկեփնջերը, քայլեցին շարքերի առջևից։*

*Մաղկաձորի պիոներները գրկաբաց ընդունեցին Ադրբեջանի պիոներներին։ Այդ ընդունելությունը ինտերնացիոնալ համերաշխության և բարեկամության վառ ցույցի վերածվեց։ Հյուրերն առանձին ջոկատով, հենց առաջին օրվանից սկսեցին իրենց աշխատանքը ինտերնացիոնալ ընտանիքում։ Կարճ ժամանակում ռուս, վրացի, ադրբեջանցի և հայ երեխաներն իրար հետ այնպես մտերմացան, որ կարծես վաղուցվա ծանոթներ լինեին։*

*— Աբասովա՛, եկ մեզ մոտ,— հրավիրում էին պիոներները և խնդրում, որ նա իրենց պատմի Բաքվի, Կասպից ծովի և հատկապես Նավթի աշտարակների մասին։*



Բաքվեցի պիոներները պատանի ճանապարհորդների ճամբարում։

Եվ Աբասովան շատ հետաքրքիր բաներ պատմեց ռեսպուբլիկայի մայրաքաղաքի մասին. իսկ Աբասովա Սիման պիոներներին ադրբեջանական երգեր ու պարեր էր սովորեցնում։

Հյուրերի գալուց հետո ճամբարային օրերը ավելի ուրախ և հետաքրքիր էին անցնում։ Վեքիլովա Զարիտեի խարույկի մոտ երևալը միշտ ուղեկցվում էր՝ «Յաշասըն»— բացագանչությամբ։ Նա իր քաղցրահնչյուն ձայնի շնորհիվ, բոլորի սիրելին էր դարձել։

Երբ պիոներները ցանկանում էին դիտել Աղաջանաշվիլու կրակոտ պարը, նվագախմբին պատվիրում էին նվագել՝ «լեզգինկա»։ Եվ ծափերի որոտի տակ ասպարեզ էր մտնում փոքրիկ վրացին։

Հյուրերը սովորել էին «Ստալին» երգը հայերեն, իսկ հայերը՝ ադրբեջաներեն և միշտ միասին էին երգում։ Պիոներները մի մյանց սովորեցնում էին նոր երգեր, խաղեր ու պարեր, պատմում էին իրենց դպրոցների, ջոկատների աշխատանքի փորձի մասին։

Շուտով բաքվեցիներին սկսեցին հրավիրել հարևան ճամբարները։ Կազմակերպվում էին բարեկամության խարույկներ, սպորտային մրցումների, ժվարճալիքի ժամեր։ Ամեն տեղ պիոներները նրանց շատ ջերմ էին ընդունում. իսկ հյուրերը նոր մտերիմ ընկերներ էին գտնում։

Ծաղկաձորի հազարավոր ճամբարականներ ուրախությամբ ընդունեցին համաճամբարային գեղարվեստական օլիմպիադայի ժյուրիի որոշումը առաջին մրցանակ շահելու առթիվ հյուրերին փոխանցիկ վիմպել նվիրելու մասին։

Գուլ Էլմիրան Սևանը տեսնելուց հետո, Բաքվի իր ընկերներին գրած նամակն ավարտել էր այս խոսքերով.

«Մենք գտնվում ենք Հայաստանի գեղեցիկ լեռնաշխարհում։ Երեկ տեսա Սևանա լիճը. վերադարձիս կպատմեմ իմ վառ տպավորությունները։ Մենք շրջապատված ենք ջերմ սիրով. օրերը շատ ուրախ են անցնում։

Էքսկուրսիա կատարելով Սևան, Թթու ջուր և այլ արժանահիշատակ վայրեր, Բաքվի պիոներներն իրավունք ստացան մասնակցելու հայրենի երկիրն ուսումնասիրող պատանի ճանապարհորդների ռեսպուբլիկական հավաքին, որին ողջունեց՝ Շաֆիգա Ջավադովան։ Իսկ ուշ երեկոյան, երբ ճամբարներում վառվեցին պիոներական խարույկները, բոլորը հանկարծ մի պահ լռեցին, և իրենց հայացքներն ուղղեցին դեպի Պիոներական սարի լանջերը։ Այստեղ խավարը ճեղքելով բռնկեցին երկու բառ «Сталин—мир»։ Այդ հրեղեն բառերը կարծես օդում էին կախված և պարզ կարդացվում էին։



Մի խումբ պիոներներ լսում են Բաքվից Ծաղկաձորի եկած Մայիսա Մահմեդովայի զրույցը։

— Լիլյա՛, երանի կարողանայինք այս հիասքանչ տեսարանը նկարել,— ասաց Սվետլանան գրկելով մտքերի մեջ խորասուզված քրոջը։

— Այո՜, Ստալին, նշանակում է խաղաղություն, երջանկություն. այդ նշանակում է, որ Ադրբեջանի պիոներները կարող են ազատ հանգստանալ Հայաստանում։

*Եվ քույրերը կարծես պայմանավորվելով բարձր գոչեցին.*

*— Շնորհակալությո՜ւն, հայր Ստալին, մեր ուրախ և երջանիկ, մեր խաղաղ մանկության համար:*

*Իսկ Սվետլանան ավելի բարձրացնելով ձայնը նորից կարդաց՝* «Сталин—мир»:

*Նրա խոսքը ծածկեցին որոտընդոստ ծափերով ու բարձրագոչ ուռայով:*

*Օրերն արագ անցան: Մոտեցան հրաժեշտի հուզիչ ժամերը: Բոլորը պատվերներ են տալիս, ստուգում են հասցեները, թարմ ծաղիկներից փնջեր են հյուսում: Փողհարի կանչով ճամբարը շարվում է՝ հյուրերին ճանապարհ դնելու:*

*— Բաքվեցիները գնում են,— միմյանց հաղորդում են պիոներները և ջոկատներով միանում ուղեկցողների շքերթին:*

*Հրաժեշտի ջերմ խոսքեր են լսվում ամենուրեք, շատերի աչքերին ուրախության արցունքներ են երևում: Հյուրերը տեղավորվում են ավտոներում: Վերջապես հրաման է տրվում առաջ շարժվելու: Ալլա Զուբերմանը հանելով կարմիր վզկապը սկսում է թափահարել օդում: Դրան հետևում են բոլորը: Եվ երբ հարյուրից ավելի ալ վզկապներ ծածանվում են օդում:*

*— Բարի ճանապա՜րհ, սիրելի ընկերնե՜ր: Մնաք բարո՜վ,— լսվում են երեխաների վերջին բառերը տարբեր լեզուներով:*

*Ավտոները հեռացան, սակայն անտառի կանաչ ֆոնի վրա դեռ ծածանվում էին կարմիր վզկապները:*

***

*Այս տարի էլ Ծաղկաձոր եկան եղբայրական Ադրբեջանի պիոներները: Նրանց ջերմորեն ընդունեցին Հայաստանի տարբեր վայրերից այս գեղատեսիլ վայրը հավաքված պատանիները:*

*Եղբայրական ռեսպուբլիկայի պիոներները այս տարի էլ լավ հանգստացան ու կազդուրվեցին, ամուր կապեր հաստատեցին Հայաստանի պիոներների հետ և անջնջելի հուշերով տուն վերադարձան:*



Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հուլիսի 14-ը անմոռանալի օր է և միշտ վառ կմնա մեր հիշողության մեջ: Գնում ենք Սևան: Ավտոն սլանում է կոլտնտեսային բերքառատ դաշտերով: Քիչ հեռու տարածվում են անտառապատ լեռները: Ահա և մենք Սևանում ենք: Ուսումնասիրում ենք էլեկտրակայանը: Մանկավարժները պատմում են Սևանի, Հրազդան գետի և նրա վրա կառուցված ու կառուցվելիք էլեկտրակայանների մասին:

Ափին է մոտենում «Միկոյան» նավը, որը մեզ տանում է դեպի կղզին: Նավը համարձակ առաջ է լողում: Ջուրն այնքան վճիտ է, որ երևում է լճի հատակը: Նա մեղմորեն զարնվելով նավին, արագ ետ է փախչում և տարբեր գույներ ընդունում: Նավի մոտ նա կանաչավուն է երևում, քիչ հեռու՝ կանաչ-երկնագույն, իսկ ավելի հեռվում՝ կապուտակ գույն է ստանում:

Ահա և կղզին: Ծանոթանում ենք նրա և լճի պատմությանը: Այն ինչ լսել էինք Սևանի մասին աշխարհագրության դասին, լրացնում ենք նոր տեղեկություններով: Երեկոյան կղզին ծածկվում է մշուշով: Լճի տեսքը փոխվում է, մռայլվում, ալիքները փրփրալով առաջ են վազում, կարծես փորձում են

ափերից դուրս գալ, սակայն նորից ետ են նահան-ջում:

Հիասքանչ տեսարան: Անվերջ ուզում ես նայել, սակայն մոտենում է վերադարձի ժամը: Մենք ուրախ երգերով վերադառնում ենք ճամբար:

Ես այժմ ավելի շատ բան ունեմ պատմելու Բաք-վի իմ ընկերներին եղբայրական ծաղկուն Հայաս-տանի մասին:

ՔԵՐԲԱԼԱԵՎԱ ԷՄԻԼԻԱ
*(Բաքվեցի պիոներ)*

# ՀՐԱԺԵՇՏԻ ԽԱՐՈՒՅԿ

Աննկատելի և արագ անցան ճամբարային ուրախ օրերը: Վաղը մեկնելու ենք հարազատ Բաքու: Ար-տաքուստ բոլորս սովորականի պես ենք, սակայն ինչ-քան ենք հուզված. ցանկանում ենք ամեն ինչ նորից տեսնել, որևէ հաճելի գործ կատարել:

Հուշատետրում փորձում ենք գրել վերջին տպա-վորությունները: Իսկ ի՞նչ գրել. ասել որ ուրախ ան-ցան օրերը եղբայրական ռեսպուբլիկայի պիոներա-կան ճամբարում, դա շատ քիչ է: Ավելի լավ է գրել միայն վերջին օրվա մասին:

Վաղ առավոտյան մենք հրավիրվեցինք Քաղլսու-միության և Պետառմիության ճամբարները, ուր ան-մոռանալի ուրախ ժամեր անցկացրինք: Ամենուրեք մեզ ջերմորեն են ընդունում: Իսկույն մտերմանում ենք, բարեկամներ գտնում, փոխանակում նասցենե-րը: Սակայն ժամերն արագ են անցնում և մենք հրաժեշտ ենք տալիս հարազատ ընկերներին:

Ծաղկաձորի վրա դանդաղորեն իջնում է երեկոն: Խավարը լեռներից իջնելով կարծես սփռվում և իր թևի տակ է առնում ծաղկավետ հովիտներն ու դաշ-տերը: Հնչում է շեփորի ձայնը: Մի ակնթարթ և վառվում է հրաժեշտի խարույկը: Կրակի բոցեղեն լե-զուները վեր բարձրանալով ցրում են խավարը, լու-սավորում շրջապատը: Խարույկի շուրջը նստած են ռուսներ, հայեր, վրացիներ, ադրբեջանցիներ. սկըս-վում է ինտերնացիոնալ ընտանիքի, ամուր բարեկա-մության ուրախ հանդեսը: Ուրախ երգեր ու պարեր, արտասանություններ տարբեր լեզուներով, սակայն հարազատ ու հասկանալի:

Ճամբարի ավագ ջոկատավարը Բաքվի պիոներ-ներից խնդրեց ջերմ ողջույններ տանել եղբայրական Ադրբեջանի երեխաներին, նրանց ծնողներին և ուսու-ցիչներին: Մեր պիոներներից Սալմազ Քարիմովան շնորհակալություն է հայտնում, ճամբարում անցկաց-րած ուրախ օրերի համար և խնդրում է, որ հայ ըն-կերները նյուր գան Բաքու: Խարույկը վերջացավ, ճամբարի դրոշն իջեցրեց մեր ջոկատավար ընկեր Կուլիևան:

Մենք երկար ժամանակ չենք հեռանում բոցկլտող խարույկի մոտից, հիշում ենք անցած ուրախ օրերը: Իսկ ես ավարտում եմ իմ հուշերը: Հայաստանի պիոներները թող իմանան, որ Ադրբեջանում նրանց նույնպիսի ջերմ ընդունելություն է սպասվում:

ՆՈՒՐԻԵՎԱ ԼԻԼՅԱ
*(Բաքվեցի պիոներ)*

# ԱՆՏԱՌԻ ԲԱՑԱՏՈՒՄ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

*Նկ. Հ. ՔԱՑԱԿՅԱՆԻ*

Մենք եկել ենք ճամբարից
Այս բացատը ծաղկալից,
Ցանցերն առած վազվզում,
Թիթեռ բռնել ենք ուզում:

Շուրջն անտառն է աղմկում,
Թռչուններն են զիլ երգում,
Եվ այդ զնգուն երգի տակ
Խոխոջում է մի առվակ:

Թիթեռները գույնզգույն,
Զեփյուռի հետ օրորուն,
Ծաղիկներով հիացած
Սավառնում են թևաբաց:

Ծաղիկներն են կարծես թե
Դարձել թիթեռ նրբաթև,
Եվ արևի շողերում
Թռվռում են ու պարում:



Մեղուներն էլ մեր սարից,
Թռած իրենց ճամբարից,
Ծաղկից ծաղիկ են թռչում,
Նեկտար խմում ու փախչում։

Հնար լիներ, մի ճնար
Այս բացատը ծայրից ծայր,
Կանաչ ծոցից հաներինք
Դպրոցի բակ տանեինք...

# ՃԱՄԲԱՐՈՒՄ

Հ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

*Անուշ է լուսաբացի քունը։ Մոտակա անտառից եկող անուշաբույր զեփյուռը ծածանում է բրեզենտյա վրանները. ճոճում են վրանաձողերը, ասես օրոր են երգում։*

*Ճամբարը դեռ քնած է։ Շարժում կա միայն ճամբարի գլխավոր վրանում։ Սեղանի առջև նստած է Քաղլուսմիության ճամբար-սանատորիայի պետ՝ Ժ. Մուրադյանը և ինչ-որ շտապ գրում է, մինչդեռ վրանի առջև ջրով շարունակում է շփվել ճամբարի ֆիզդեկ Մ. Շահբազյանը։*

*Ներս է մտնում ավագ ջոկատավար Վ. Համբարձումյանը. նա գալիս է խոհանոցի կողմից, ուր կաթնավուն աղջամուղջի մեջ ծվեն-ծվեն բարձրանում է ծուխը։*

*— Ամեն ինչ կարգին է,— զեկուցում է նա։*

*Երբ ժամը յոթին պատանի փողահարներ Էռնեստն ու Ալբերտը դուրս են գալիս «վերկացը» հնչեցնելու, շեփորներն ասես հանկարծ բոցավառվում են արեգակի ոսկեգույն ճառագայթներից։*

*— Վեր կա՛ց, վեր կա՛ց, վեր կա՛ց...*

*Լիցքային վարժությունը տևում է տասնհինգ րոպե։ Այնուհետև պիոներները լվացվում են և հավաքում անկողինները։ Պետք է շտապել, չէ՞ որ ժամը յոթն անց հիսունին դրոշի բարձրացումն է։*



*Արևի ոսկեգույն ճառագայթները բեկբեկվում են ճամբարի կարմիր պաստառով զարդարված ամբիոնի վրա։ Ամբիոնի կենտրոնում վեր է խոյացել դրոշակի ձողը՝ կարմիր աստղը ծայրին։*

*Այնտեղ, ամբիոնի վրա են ճամբարի պետը, ավագ ջոկատավարը և մի աղջիկ։ Նա Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտուհի Մերկելյան Անժելյան է։ Այսօր նա պիտի բարձրացնի ճամբարի դրոշակը։*



Գրական խմբակը պարապմունքի ժամին։

— Աչ հավասա՛ր,—հնչում է հրահանգը։ Կանգնած են պիոներները ջոկատ առ ջոկատ, շողշողացող դեմքերով, առույգ ու երջանիկ։ Լռությունը հանդիսավոր է. լսվում է միայն անտառի խշշոցը։ Եվ ահա վստահ ու կտրուկ քայլերով իրար ետևից առաջ են գալիս օղակավարները և պատվի առնելով զեկուցում են ջոկխորհրդի նախագահներին։ Զեկույցը հասավ ճամբարի ավագ ջոկատավարին, վերջապես ճամբարի պետին։ Ամբիոնի վրայից լսվում է ձայնը.

— Ճամբա՛ր, զգա՛ստ. պատվի ա՛ռ։

Եվ մի վայրկյանում վեր են բարձրանում հարյուրավոր ձեռքեր, հնչում է ճամբարի փողային նվագախմբի ձայնը, ու Պետական հիմնի խրոխտ հնչյունների տակ, մեղմ զեփյուռից ծածանվելով բարձրանում է ճամբարի ոսկեկար դրոշը։

— Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ,— գոչում են ամբիոնից։

— Մի՛շտ պատրաստ,— արձագանքում է խանդավառ ճամբարը։

Դրոշակը, կարծես թե արդեն ծածանվում է կապույտ երկնքում. նա իշխում է այժմ ամբողջ Ծաղկաձորի վրա, բարձրադիր անտառների և ծաղկած ձորերի վրա։



Նախաճաշից հետո ճամբարականներն անտառ են գնում։ Եվ հենց այդտեղ՝ անտառում վտակի ափին կանգ են առնում։

Պատանի ալպինիստների խումբն իսկույն անհետանում է պղնձագույն ժայռերի ետևում. իսկ միչուրինականները և բնասերները ցրվում են կախարդիչ մարգագետնում՝ ամեն մի թուփ, ամեն մի ծաղիկ ու միջատ հետազոտելու համար։

— Հանքաքարեր կբերե՛ք,— կանչում է ետ մնացած պիոների ետևից բնագիտական խմբակի ղեկավար Լյուդմիլա Լոյկոն։

Եվ ահա հենց ջրի ափին, գոգավոր ժայռերի վրա նստած, Մայակովսկու անվան դպրոցի աշակերտուհի Ղափլանյան Թամարան պատանի բնասերներին պատմում է Միչուրինի կյանքի ու գործունեության մասին։ Երկար ժամանակ չէ, ինչ այս գեղեցիկ բնության մեջ իրար են հանդիպել պատանի բնասերները, բայց արդեն ունեն Ծաղկաձորի ֆլորան պատկերացնող ծաղիկների, խոտաբույսերի և արմատիքի մի հետաքրքիր հավաքածու։ Ինչե՛ր չկան այստեղ՝ և՛ սունկեր, և՛ դեղաբույսեր, և՛ արմատիք։

Հավաքածուներ են կազմում՝ Գաբրիելյան Էմման, Մաթևոսյան Նոնան, իսկ Հակոբյան Ռուդիկը խմբակի օրագրում գրում է նոր գտնված ամեն մի խոտաբույսի ու ծաղկի մասին։ Կաքավների խրտվիլակները, կրիան, ջրային օձերը և բազմազան միջատներն ու թիթեռնիկները պետք է հարստացնեն դպրոցի բնագիտական կաբինետը։

Անտառում է նաև գրական-գեղարվեստական խմբակը. նրանք իրենց ղեկավարի՝ Հակոբյան Ազգուշի հետ միասին տեղավորվել են անտառի բացատում։ Խնձորենու բնին հենված ղեկավարին են լսում Մայակովսկու անվան դպրոցի աշակերտուհիներ՝ Մանուկյան Նոնան, Հարությունյան Սվետլանան և № 55 դպրոցի աշակերտ Ղահրամանյան Ոսկանը։

Նրանք կարդում են «Երիտասարդ գվար-

դիան», ապրում Օլեգ Կոշևոյի և հերոս ընկերների սխրագործություններով։

⁂

— Բարև՛ շախմատիստներին։

— Բարև՜,— պատասխանում են նրանք գլուխները չբարձրացնելով։

Մտախոհ ու լարված են փոքրիկ շախմատիստները. կատակ բան չէ տարվելը. և ինչո՞ւ տարվել, երբ կարելի է խաղալ մտածելով և զգույշ։ Բայց այսպես թե այնպես, խաղատախտակի վրա մնացել են՝ մի ձի, մի թագուհի, երկու զինվոր ու սարսափահար թագավորները։ Ահռելի ջարդ է տեղի ունեցել քիչ առաջ։

— Շա՛խ,— հանկարծ ասում է Սպանդարյանի անվան դպրոցի աշակերտ Ռաֆիկ Կարապետյանն իր «հակառակորդ» № 30 դպրոցի աշակերտ Դավթյան Ռուդիկին։ Ռուդիկը փորձում է վերջին մանյովրը, բայց արդեն ուշ է։

— Շախ և մա՛տ,— բացագանչում է այժմ Ռաֆիկը և ծիծաղելով նայում Ռուդիկին։

— Բան չկա,— ասում է վերջինս գլուխը քորելով,— նորից կխաղանք. ես թագավորին հիմա դեղ կըսրսկեմ։

⁂

Կես ժամը բավական է, որ պիոները մի ամբողջ հետաքրքիր նամակ գրի տանեցիներին և կամ քաղաքում մնացած ընկերներին։ Շատերը գրադարանից գրքեր են վերցնում, իսկ Հովհաննիսյան Լաուրան խնամքով արտագրում է ճամբարին նվիրած իր սեփական բանաստեղծությունը, որ պիտի այս երեկո կարդա խարույկի առջև։ Լաուրային շատ է չարչարում մի հանգ, բայց նա անպայման այդ կգտնի. մինչև խարույկը դեռ շատ ժամանակ կա։



Պատանի բնասերները կոլեկցիաներ և հերբարիումներ են կազմում դպրոցի համար: Աշխատանքները ղեկավարում է Լյուդմիլա Լոյկոն (աջից):

Ճաշից հետո ճամբարային երգերի ուսուցման ժամն է։ Հնչում է փողային նվագախումբը, ճամբարը երգում է միաձայն։ Երգում են «Երևանը», «Մոսկվա—Պեկինը», իսկ սրնգահար Արտոն մեղմ ու քնքուշ նվագում է «Լուր դա լուրը»։ Ինչքա՜ն լավ է նվագում Արտոն...

Կից ծառուղիում հանկարծ լսվում է մի առույգ քայլերգ։

— Եկա՜ն. սննդառցինե՜րն են։

Լուրջ ու հանդիսավոր նրանք կանգ են առնում ճամբարի դարպասի առջև, բայց փոքրիկ պահակը ներս չի թողնում։ Գալիս է Լյուբով Պետրովնան։

— Թողնե՛լ,— ասում է նա,— նրանք մեր թիմի հետ մրցելու են եկել։ Եվ փոքրիկ պահակը նոր միայն ներս է թողնում լուրջ ու հանդիսավոր սննդառցիներին։

Մարզադաշտ են իջնում և դաշտի տերերը՝ Քաղլուսմիության ճամբարի պիոներները։ Հնչում է ազդանշանը և խաղն սկսվում է։

Կեցցեն, լավ են խաղում։ Փոքրիկ վոլեյբոլիստների ձեռքերը թռիչքի ժամանակ ցանցից էլ վեր են հասնում ու գնդակը շեշտակի խփում հակառակ ուղղությամբ։ Լարված ուշադրությամբ խաղին են նայում քաղլուսցիները և հյուր եկած սննդառցիները։



Ծաղկաձորի անտառապահ Նովիկովը անտառի պահպանման մասին զրուցում է Տեղարդմիության ճամբարի պիոներների հետ:

*Պատվի հարց է. ո՞վ է հաղթելու: Եվ ահա՝ երկուսով զրո: Քաղլուսցիները ուռա են կանչում: Սննդառցիներն ավելի վարպետ էին խաղի մեջ, բայց հակառակորդի թեթև հաջողությունից իրենց կորցրած սկսեցին խանգարել մեկը մյուսին և պարտվեցին: Չի կարելի անտեսել կոլեկտիվի ուժը:*

*Երբ ժամացույցի սլաքը կանգնում է իննի վրա, բոցավառվում է ճամբարի առաջին խարույկը: Քամին շաղ է տալիս կայծերը և խարույկը ճարճատում է աշխուժացած: Նրա բոցերի պես շիկնել են շուրջը բոլորած պիոներների դեմքերը, իսկ փողային նվագախմբի վրա ասես շողշողուն աստղեր են իջել: Դեպի խարույկն է առաջանում ճամբարի պետը: Նա կարդում է ողջույնի հեռագիրը որ պիտի ուղարկեն Արտեկի Մոլոտովի անվան պիոներական ճամբարին: Սկսվում է Առաջնորդին նվիրված գրական-գեղարվեստական մոնտաժը:*

*Ապա սկսվում է հայկական ուրախ շուրջպարը. իսկ քիչ հետո բացօթյա բեմ են ելնում մանուկ դերասանները: Խարույկի բոսորագույն լույսի տակ հեքիաթային գույներով շողշողում են դերակատարների գույնզգույն տարազները: Լաուրա Հովհաննիսյանը ճամբարի փոքրիկ բանաստեղծուհին, կարդում է սրտառուչ՝*

*«Ո՛վ խարույկն այս ուրախության,*
*Ո՛վ երգերը ջերմ ու հորդ,*
*Դու ես տվել մեր աննման*
*Հոգատար հայր Առաջնորդ...»*

*Խարույկը ճարճատում է: Չոր փայտերը մեկ-մեկ հալվում են ծիրանագույն կայծեր շաղ տալով. հնչում է «Աշխարհի դեմոկրատական երիտասարդության հիմնը», իսկ ճամբարը մի մարդու նման երգում է՝*

*Եվ այս երգը չի մահանա,*
*Միշտ կապրի, միշտ կապրի...*




*Է. ՅԱՎՐՈՒՄՅԱՆ* *Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

Իրինան ընկավ ամենակրտսերների՝ վեցերորդ ջոկատը: Նա դեռ այնքան փոքր էր, որ անգամ վեցերորդ ջոկատում ընկավ վերջին օղակը:

Երբ կայացան ջոկատի խորհրդի ընտրությունները, փոքրիկ Իրինային չընտրեցին: Նա շատ տխրեց: Հեռացավ աղջիկներից և արդեն չլսելով, թե ինչի մասին էին նրանք խոսում, սկսեց խոտեր պոկոտել գետնից: Իհարկե նա դեռ փոքր է. շարքում վատ է քայլում, անկողինը կարգին չի գցում, մայրիկի ետևից մի անգամ լաց է եղել, իսկ աղջիկները այս բոլորը տեսել են: Մի՞թե կարելի է նման պիոներին որևէ գործ վստահել:

Եվ հանկարծ ջոկատավար Գոհարը, ուշադիր նայելով փոքրիկ Իրինային, ասաց.

— Սպասեցեք, աղջիկնե՛ր, բոլորին մենք ընտրեցինք, իսկ ջոկատի փոստատար չունենք: Ո՞վ պետք է հավաքի ձեր գրած նամակները: Սա շատ կարևոր գործ է: Եկեք Իրինա Մովսիսյանին նշանակենք, նա շատ ճշտապահ աղջիկ է:

Աղջիկները պաշտպանեցին ջոկատավարի առաջարկը.

— Իրինայի՜ն, Իրինայի՜ն...

Այսպիսով փոքրիկ Իրինան դարձավ ջոկատի փոստատարը: Դրանից հետո նա անընդհատ կրկնում էր.

— Աղջիկնե՛ր, նամակներ գրեցեք, չէ՞ որ հայրիկներն ու մայրիկները կանհանգստանան:

Իրինան ջոկատավար Գոհարից հարցրեց ճամբարի հասցեն և գրեց մի մեծ կտոր ստվարաթղթի վրա: Ստվարաթուղթը դրեց սեղանին, մոտն էլ՝ սոսնձով լի մի բանկա. ձեռք բերեց վրձին, թանաքաման և երկու գրիչ, այնպես, ինչպես փոստում: Բայց երբ աղջիկները խաղում էին. գրքեր էին դիտում և կամ նկարում, նրանք սեղանի վրայից վերցնում էին թանաքամանը և սոսնձով լի բանկան: Իրինան թանաքամանը գտնում էր պատուհանի գոգին, սոսինձը՝ նստարանի վրա և նորից դնում տեղը: Ամենագլխավորն այն էր, որ նա շատ ուշադիր կազմեց ջոկատի անդամների ցուցակը, որպեսզի նշի, թե ով է նամակ գրել և ով՝ ոչ:

Առաջին նշանը երևաց Անահիտ Ղազարյանի ազգանվան դիմաց: Նրա փոխարեն Իրինան ինքը գրեց: Անահիտը ոչ մի կերպ չէր կարողանում որոշել, թե ինչի մասին գրել. իսկ ճամբարում այնքա՜ն հետաքրքիր բաներ կային: Հենց երեկ ջոկատավար Գոհարը հարց ու պատասխանի երեկո կազմակերպեց: Աղջիկները հարցնում էին ինչ որ ցանկանում էին, իսկ Գոհարը պատմում էր, թե ինչո՞ւ օձերի մի տեսակը թունավոր է, մյուսները՝ ոչ, ինչո՞ւ ամպերը չեն ընկնում, ինչո՞ւ պետք է քնել աջ կողքի վրա: Այս բոլորի պատասխանները Իրինան մանրամասնորեն գրեց Անահիտի հայրիկին: Գուցե նա էլ որևէ բան չգիտեր:

Շուտով մյուս աղջիկներն էլ իրենց նամակները տվեցին Իրինային: Ամենից դժվարը խորհրդի նախագահ Նինա Ներսիսյանին համոզելն էր: Նա շատ էր զբաղված: Վերջապես Իրինան բարկացած ասաց.

— Դու նախագահ ես և չես գրում: Այդ դեպքում մյուս բոլոր աղջիկներն էլ պետք է հրաժարվեն:

Նինան շատ անհարմար զգաց ու շփոթվեց և հենց այդ նույն գիշեր մայրիկին նամակ գրեց:

Իրինան ծանոթացավ շոֆերի՝ քեռի Արամի հետ, որը մթերք էր կրում ճամբար: Օրական մի քանի անգամ նա վազում էր իմանալու՝ մեքենան գնացել է, թե՞ ոչ:

Երբ քեռի Արամը մեքենայի մոտ զբաղված էր լինում որևէ բանով, Իրինան դեռ հեռվից գոչում էր.

— Քեռի Արա՛մ, մի քիչ էլ սպասեցեք: Մեր աղջիկները հիմա կվերջացնեն իրենց նամակները:

— Կսպասեմ, կսպասեմ,— պատասխանում էր չոփերը ժպտալով:

Եվ նա այնպես ընտելացավ վեցերորդ չոկատի փոստատարին, որ արդեն ինքն էր մեքենան կանգնեցնում ամառանոցի մոտ, ապակին իջեցնում և խցիկից դուրս գալով գոչում.

— Փոստատար Մովսիսյա՛ն, ինչպե՞ս է նամակների դրությունը, վերջացրե՞լ են գրելը:

Իրինան սրընթաց վազում էր՝ նամակների հաստ կապոցը ձեռքին, իսկ հեռի Արամը ասում էր.

— Վեցերորդ չոկատում լո՛ւրջ գործ են սկսել:

Մի անգամ երեկոյան Գոհարն Իրինային հրավիրեց խորհրդի նիստի:

— Ինչպե՞ս է նամակների դրությունը մեզ մոտ, գրո՞ւմ են:

— Գրում են,— պատասխանեց Իրինան.— արդեն բոլորը գրել են:

Եվ Գոհարին տվեց այն ցուցակը, որտեղ ազգանունների դիմաց շատ պարզ նշաններ էին դրված:

— Ո՛չ, ոչ բոլորը,— առարկեց Գոհարը,— ինչ-որ մեկը չի գրել:

Իրինան Գոհարի թևի տակով վախեցած նայեց և տեսավ, որ իսկապես ինչ-որ մեկի ազգանվան դիմաց ոչ մի նշում չկա:

— Հետաքրքի՛ր է, դա ո՞վ է,— հարցրեց Գոհարը, մատը դատարկ տողից տանելով դեպի ազգանունը: Նա բարձրաձայն կարդաց.

— Իրինա Մովսիսյան:

— Վա՜յ,— ճչաց Իրինան խիստ կարմրելով.

Վա՜յ... Ահա թե ում մասին էր նա բոլորովին մոռացել:

# ԱՆՀՆԱԶԱՆԴ ՈՒԼԻԿԸ

*(Մոնղոլական հեքիաթ)*

*Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

*Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

Ասում են, որ հեռու երկրում
Մի այծ, մի ուլ էին ապրում:
Շատ էր սիրում այծն ուլիկին՝
Անուկ ու ժիր իր բալիկին:
Որոնում էր նրա համար
Արածելու տեղեր հարմար,
Որտեղ որ կար խոտ հյութալի
Եվ սառնորակ ջուր աղբյուրի:
Գարնան մի օր նրանք հանդում
Ծաղիկ ու խոտ էին ուտում:
Իսկ ուլիկը աշխույժ, կայտառ
Չուներ հանգիստ, չուներ դադար,
Մեկ էլ տեսար տրտինգ տալիս
Իր մայրիկի մոտ էր գալիս,
Մեկ էլ հանկարծ վազում, վազում,
Թռչկոտում էր մոտիկ փոսում:
Արածեցին մի քանի օր
Ու վերջացավ խոտը բոլոր:
— Դու այստեղ կաց, սիրո՛ւն բալես,
Գնամ արոտ որոնեմ ես:
Առ այս զանգը վզիդ կախիր,
Թան պատահի՝ զանգահարիր:

Թե չար մարդ գա, որ քեզ ծեծի,
Դու հարու տուր, մի՛ վախեցիր.
Իսկ թե տեսնես գայլ է գալիս,
Չվախենաս դու նրանից,
Զնգզնգացրու՝ իսկույն կգամ,
Նրա բուրդը քամուն կտամ:



Ասաց, այծը, գնաց արագ,
Ուլը մնաց մեն ու մենակ:
Բայց դեռ բլրի մոտ չհասած,
Հանկարծ լսեց՝ զանգը զնգաց:

«Վա՜յ, բալա ջա՜ն, ի՞նչ եղավ քեզ»,
Ասաց այծը, իսկույն վազեց։
Եկավ, տեսավ ուլը հանդում
Հանգիստ կանգնել, խոտ է ուտում։
— Բալի՛կ, այդ ի՞նչ է պատահել։
— Ոտիս վրա ճանճ է նստել։
— Դրա համա՞ր ինձ կանչեցիր,
Ճանճ է նստել՝ պոչով քշիր,—
Ասաց այծը ու բարկացած
Ուլին թողեց, էլի գնաց։
Բայց դեռ չանցած մոտիկ բլրից,
Զանգի ձայնը լսեց նորից։
Վազեց, վազեց այծը կրկին
Դեպի ուլը իր թանկագին։
Եկավ, տեսավ ուլը հանդում
Հանգիստ կանգնել, խոտ է ուտում։
— Բալի՛կ, այդ ի՞նչ է պատահել։
— Աչքիս մեջը հող է ընկել։
— Հո՞ղ է ընկել, արի հանեմ,
Զանձրացրիր դու ինձ արդեն։
Ամեն հիմար բանի համար
Դու չես տալիս մորդ դադար։
Ես գնում եմ, որ մեզ համար
Արոտ ճարեմ կանաչ, հարմար,
Իսկ դու անվերջ զանգը տալիս,
Ետ ես դարձնում ճանապարհից։
Իզուր տեղը էլ չկանչես,
Թե չէ սոված կթողնես մեզ,—
Ասաց այծը, քաշվեց, գնաց,



Բայց քիչ հետո զանգը զնգաց։
«Էլի՞ զնգոց, ուլի՛կ հիմար,
Խաղալի՞ք եմ ես քեզ համար.
Խաղ ես անում զանգակի հետ,
Խաբում ես ինձ, չեմ դառնա ետ»։
Հասավ սարի ստորոտին,
Տեսավ մի լավ մարգագետին.
Այծը կանգնեց ու հիացած
Նայեց, նայեց, ուրախ ժպտաց.
«Իմ բալիկը կուշտ կլինի,
Լավ կարածի, վազ-վազ կանի՜»։
Ճամփա ընկավ ուլիկի մոտ՝
Որ առնի ու տանի արոտ։
Վազեց, հասավ, հոգնած, քրտնած
Եվ աչքերին չհավատաց.
Չկար սևուկ ժիր ուլիկը,
Անհնազանդ իր բալիկը.
Արյունոտ են խոտն ու փոսը,
Մնացել են զանգն ու պոզը…

# ՊՂՆՁԱՀԱՆՔՈՒՄ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Ա. ԱԹԱՅԱՆԻ

*— Ահա՛, նայեցեք, պղնձաշերտը…*

*Իմ ուղեկիցը՝ երկրաբան Մանիշակը, զրուցելով, կարբիդե լամպը մոտեցնում էր ապատին։ Մոտրերկրյա ուղիներում պղնձարջասպի նման կապույտ շերտը ադամանդի ցոլք էր տալիս։ Նրա վրա բեկբեկվող լույսը խտտում էր մեր աչքերը։ Ձեռքի փոքրիկ մրճիկով ապատին հարվածելով, Մանիշակն առաջ էր շարժվում։*

*— Երբ ես էլ առաջին անգամ հանք մտա,— շարունակեց պատմել նա,— ամեն ինչ նորություն էր ինձ համար և թվում էր, թե այս աշխատանքն իմ բանը չէ։ Բայց ընտելացա այս աջ ու ձախ թեքվող հանքախորշերին, սիրեցի հանքափորի աշխատանքը։*

*Մանիշակը ոգևորված էր։ Այդ ես նկատում էի նրա աչքերի ճառագայթից։ Աջից ու ձախից էլեկտրական լույսը խրձերով հեղեղում էր մեր ճանապարհը։ Ուղին լուսավոր էր, ինչպես փողոցները դրսում՝ Ղափանում։ Մանիշակի դեմքից ժպիտը չէր չքանում։*

*— Ուրիշ երկրաբան աղջիկներ կա՞ն,— հարցրի նրան։*

— Շա՜տ, ինչո՞ւ չէ։ Արդեն տաս տարի է, ինչ աղջիկների հոսանք է սկսվել դեպի հանքային աշխատանքները։ Շատերն են հրապուրվում։ Եվ ինչո՞ւ չպետք է հրապուրվեն։ Մեզ մոտ միշտ էլ նոր ու նոր երևույթների ես հանդիպում։ Կուզե՞ք մի դեպք պատմեմ։

— Ի՞նչ դեպք։

Մանիշակը թռավ առվակի վրայով և ինձ հրավիրեց մեր ճանապարհը խաչաձևող մի հանքախորշ։ Հիսուն քայլ չէինք անցել, երբ նա կանգ առավ։ Մեր շուրջը կախված էին բազմերանգ ապառներ։ Մանիշակը նույն պայծառ ժպիտը դեմքին, պատմեց.

— Ճիշտ երկու ամիս առաջ էր։ Հանքափոր Վարդանյանը փորում էր այս հանքախորշը։ Տեսնո՞ւմ եք այս պղնձի շերտը։ Ահա՛, նայեցեք։ Սա հեռվից է գալիս և այստեղ ընդհատվում։ Երկու ամիս առաջ, երբ Վարդանյանի փորած անցքերը պայթեցրինք, հանկարծ նկատեցինք, որ շերտն այլևս չկա։ Երակը կորել էր։ Ձեռքի մուրճիկներով փորեցինք աջ ու ձախ, ուղղահայաց, դեպի առաջ՝ երակ չկար։ Ոմանք ասացին՝ երակը վերջացավ։ Մյուսները թե՝ չարժե այլևս որոնել, չի գտնվի. իսկ հանքի վարիչն ինձ կանչեց ու ասաց. «Քեզ տեսնեմ, Մանիշա՛կ, կորած երակը պետք է հայտնաբերես։ Դա քննություն է քեզ համար, հայրենիքի առաջ...»։

Անմիջապես տուն վազեցի, քրքրեցի գրքերը, որ ինձ հետաքրքրող հարցի պատասխանը գտնեմ. բայց չգտա։ Շարունակեցի որոնումներս հանքի վարչության տեխնիկական գրադարանում։ Այստեղ ևս ինձ հետաքրքրող հարցի մասին ոչ մի խոսք չկար։ Նայեցի երկրակազմության վերաբերյալ գրքերը և վերհիշեցի, թե ինչպես են առաջացել պղնձաշերտերը։ Երբ երկրի մակերեսը նոր է սկսել սառչել, հաճախ ներքին ահեղ ուժերի ազդեցության տակ ճեղքեր են առաջացել և ներսից նրանց մեջ են ներհոսել հրահեղուկ պղինձը կամ այլ օգտակար մետաղներ։ Անցել են ժամանակներ, կեղևը նորից է կոտրվել և հնում գոյացած շերտը մասերի է բաժանվել։ Այդ մասերը միմյանցից որոշ տարածությամբ հեռացել են։ Ահա, դրանից էլ ես եզրակացրի, որ հենց այստեղ էլ շերտը մասերի է բաժանվել ու մասերը միմյանցից հեռացել են։ Բայց, աջ է հեռացել շերտը, թե ձա՞խ... այս մասին գրքերը լռում էին։

Եվ ես գործի անցա։ Աջից երկու մետրանոց մի գայլիկոնային[1] անցք փորեցինք. ոչ մի հետք։ Նույնն արեցինք նաև ձախ կողմում. դարձյալ իզուր։ Երեկոյան զրույց ունեցա բոլոր նշանավոր երկրաբանների. փորձված մասնագետների հետ։ Պարզվեց, որ մեր պղնձի ծննդավայրում կոտրած շերտերը գտնվում են աջ կամ ձախ կողմերում։ Նորից մանրակրկիտ կերպով ուսումնասիրեցի ապառների դասավորությունը, շերտի ընդհատված տեղը երկար զննեցի ու գտա, որ շերտը պետք է լինի ձախ կողմում։ Ու վստահ ասացի. «փորել դեպի ձախ»։ Երկու պայթյունից հետո կո-



րած երակը հայտնաբերվեց և մենք շարունակեցինք շահագործել։

Ես նայեցի Մանիշակին։ Նա խորը [illegible] տաքերքի մեջ էր։

[1] Գայլիկոն—հանքահատ գործիք։

— Ահա, մեզանից կես կիլոմետր հեռու հայտնաբերել ենք ութ մետր հաստությամբ, քառասուն մետր բարձրությամբ մի անվերջանալի պղնձաքարի շերտ,— շարունակեց նա։

— Կտեսնե՞նք մենք։

— Ինչո՞ւ չէ։ Ասենք՝ մինչ այնտեղ հասնելը ուրիշ հրաշալիքներ էլ կտեսնենք։

Առաջ շարժվեցինք։ Որոշ տեղ առաջանալուց հետո Մանիշակը հանգցրեց կարբիդե լամպը։

— Վերև նայեցեք։

Ես գլխի չընկա։ Մեր շուրջը խավար է։

— Տեսա՞ք,— հարցրեց Մանիշակը։

— Ի՞նչը։

— Ուրեմն վեր չե՞ք նայում։

Ես վեր նայեցի։ Ճիշտ է, այժմ թեև հանքի ներսումն ենք ու խավարում, բայց ուղղահայաց անցքով երևացող երկնքի պատառիկի վրա ես ցոլացող մի աստղ տեսա։

Վառեցինք լույսերը. առաջ անցանք։ Ահա և ութ մետր լայնություն ունեցող «կորած» երակը, որ գտել էր երկրաբան Մանիշակը։

Երակը դիտելուց հետո բռնեցինք ելքի ուղին։ Երեք հարյուր մետրից հետո երևաց հանքի ելքը։ Մեր առջև մի այլ տեսարան բացվեց...

Օխչի գետը փրփրում էր ներքևում։ Կապուտջուղն իր ճերմակ գագաթով իշխում էր շրջապատի վրա, իսկ նրա շուրջը սեպաձև, ասես պարսպապատ լեռները խոլական պար էին բռնել։

Սյունյաց լեռների կատարների վրայից շեղ ընկել էին մայր մտնող արեգակի ճառագայթները՝ ինչպես լուսարձակներից հորիզոնական ուղղությամբ նետված լույսի խուրձեր։ Ներքևում բացված էին անդնդախոր կիրճեր։ Հովը վետվետում էր։

Հիացած բնության գեղեցկությամբ, մենք նստեցինք հանքի մուտքից մի քիչ վեր՝ ծաղկած խնձորենու տակ։

Երկրաբան Մանիշակը շարունակում էր պատմել այդ լեռների ընդերքում թաքնված գանձերի մասին։

# ԴԱՍԱՐԱՆԻ ԱՆՈՒՆԻՑ

*ԱԴՈԼՖ ՀԵՐՑ* *Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Արդեն յոթ տարի է անցել այն օրից, ինչ երկրորդ համաշխարհային պատերազմը վերջացել է գերմանական ֆաշիզմի պարտությամբ։

Այդ պատերազմից հետո Գերմանիան բաժանվեց երկու մասի՝ Արևմտյան և Արևելյան։ Երկրի Արևելյան մասում, գերմանական ժողովրդի կամքով, ստեղծվեց Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկա. իսկ Արևմտյան Գերմանիան, ամերիկացիները և անգլիացիները ձգտում են դարձնել նոր պատերազմի պլացդարմ։ Գերմանական ժողովուրդը ցանկանում է, որ իր երկիրը դառնա ազատ, միասնական. սակայն իմպերիալիստները խանգարում են նրա այդ ձգտումը։

Արևմտյան Գերմանիայի ժողովուրդը խաղաղություն է ուզում։ Այդ գործում մեծահասակներին օգնում են նաև երեխաները։

Տպագրում ենք Ա. Հերցի պատմվածքը, որտեղ նկարագրվում է երեխաների պայքարը՝ խաղաղության համար։

Նրանք դռան առաջ կանգնեցին։

— Առաջ դու գնա,— ասաց Կարլը ու ձեռքը տարավ թավշյա վարտիքի գրպանը։

— Ինչո՞ւ ես,— հարցրեց Գեյնցը.— դու ինձանից լավ ես խոսում։

— Իսկ դու բարձրահասակ ես, ամրակազմ, նա քեզանից իսկույն կվախենա։

Հանկարծ խանութի դուռը բացվեց։ Շեմքին կանգնած էր մի կարճահասակ, հաստ մարդ։ Նա ակնոցների տակից կասկածանքով նայեց տղաներին ու մրթմրթաց.

— Ի՞նչ եք անում այստեղ։ Ուզում եք երեկվա նման գնորդներին փախցնե՞լ...

— Մե՞նք... Մենք երեկ չենք եղել այստեղ...— հազիվ պատասխանեց Կարլը։

— Դե՛, իսկույն հեռացեք, անգործնե՛ր, թե չէ՛...

Կարլի դեմքը շառագունեց։ Նա հուզմուն-

քից չէր կարողանում խոսել։ Գեյնցը անհանկատելիորեն հրեց ընկերոջը։

— Կա՛րլ, դու միշտ լավ էիր խոսում... Իսկ այսօ՞ր... Պարո՛ն Գրիբել,— խանութպանին դիմեց Գեյնցը,— եկել ենք ձեզ հաղորդելու...

— Ո՞վ է ուղարկել ձեզ և ի՞նչ պետք է հաղորդեք ինձ։— Զայրացած խանութպանը հազիվ էր զսպում իրեն։



Գեյնցը հիշեց, թե ինչպես իրենց դասարանի ավագը՝ Թոնին, բացատրում էր, որ այս պարոնի հետ պետք է խոսել ոչ թե փողոցում, այլ խանութում։

Գեյնցը շարունակեց.

— Մենք եկել ենք ձեզ մոտ մեր ամբողջ դասարանի կողմից...

Պարոն Գրիբելը զարմացած նայում էր մերթ մեկին, մերթ մյուսին։

— Եթե դուք եկել եք նվիրատվություն ուզելու, ես ոչինչ չեմ կարող տալ...

Տղաները բացասաբար շարժեցին գլուխները։ Ոչ, նրանք նվիրատվություն ուզելու չէին եկել։

— Դե՛, այդ դեպքում՝ ներս եկեք,— և Գրիբելը տղաներին ներս թողեց։

Խանութում մութ էր։ Աղոտ լույսը փողոցից ներս էր թափանցում։ Գրիբելը վառեց էլեկտրական լամպը։ Տղաները կանգնած էին փայտից պատրաստած խաղալիքների մոտ։ Դարակների վրա դասավորված էին ավտոներ, տանկեր, հրանոթներ, զինվորներ։ Ահա մի զինվոր՝ պառկած դիրքում, մյուսը՝ հրացանը ձեռքին, նշան բռնելիս։ Այդ բոլորը, կարծես իսկական լինեին, ինչպես Գրյունվալդում[1]։

— Նայի՛ր, ինչքա՜ն նման են նրանց...,— շշնջաց Կարլը Գեյնցին։

Տղաները սարսափով նայեցին խաղալիքներից մեկին, որը պատկերում էր մի քաղաքի մակետ։ Քաղաքի վրա կախված էր մի ինքնաթիռ, նրան չորս ռումբ էր ամրացված։ Մի շարժում՝ և ռումբերը կավերեին «քաղաքը»։ Ինչպես հավատացնում էին ռեկլամները, այդ «նորությունները» բերված էին Ամերիկայից։

— Ուզո՞ւմ եք այս խաղալիքը գնել...,— հարցրեց Գրիբելը։

— Ո՛չ... Մենք ուզում ենք...,— ասաց Գեյնցն ու գրպանից մի թուղթ հանեց,— ահա, վերցրեք, այստեղ ամեն ինչ գրված է...

Տղաները լարված սպասում էին։ «Կհամաձայնվի՞, կասի՞ «այո»» մտածում էր Կարլը։ Նա պետք է համաձայնվի։ Չէ՞ որ նամակում պարզ ասված է, որ ինքը չի կարող ասել «ոչ»... Քառասուներեք աշակերտ այս թուղթը ստորագրել են։ Հանկարծ Կարլը ցնցվեց։ Խանութպանը թուղթը շպրտեց վաճառասեղանին և սկսեց բարձրաձայն քըրքըջալ.

— Էմիլիա՜,— ծիծաղից խեղդվում էր հաստ մարդը,— ո՞ւր ես կորել, Էմիլիա՜... եկ այստեղ. ապա մի կարդա այս թղթիկը,— ու բռունցքը խփեց վաճառասեղանին։

— Անպիտաննե՛ր, դո՞ւք պետք է ինձ ցույց տաք, թե ինչպիսի խաղալիքներ կարելի է ծախել...

— «Շեշտակի գրոհը» անպետք խաղալիք

[1] Գրյունվալդ—Բեռլինի ամերիկյան օկուպացիոն սեկտոր։

է,— կամաց, բայց ազդեցիկ ձևով շշնջաց Ջեյնցը,— այդ խաղալիքը պատրաստել են պատերազմի հրձիգները...

— Դո՞ւք պետք է ինձ սովորեցնեք,— ասաց խանութպանն ու մոտեցավ տղաներին։— Ո՞վ է սովորեցրել ձեզ հիմարություններով զբաղվել։ Ես ձեզ ասում եմ, որ խաղալիքը ոչ մի ընդհանուր բան չունի պատերազմի հետ. այսպես հաղորդեցեք նրանց, ովքեր թելադրել են ձեզ, հասկացա՞ք...

— Մեզ ոչ ոք չի թելադրել,— գոչեց Կարլը,— մենք դասարանական ժողով ենք ունեցել։ Թուղթն ստորագրել են քառասուներեք աշակերտ։ Իսկ դուք գիտեք. որ Ամին[1] նոր պատերազմ է ուզում, այսպես ասաց հայրս. իսկ նա ձեզանից շատ է հասկանում։ Մենք խնդրում ենք խաղալիքներն իսկույն հավաքել։

— Լռի՛ր,— բղավեց խանութպանն ու Կարլին հրեց դեպի դուռը։ Հաստ մարդու ճակատին քրտինքի կաթիլներ երևացին,— դո՛ւրս կորեք...

Կարլն ու Ջեյնցը լուռ քայլում էին փողոցով։ Մերձակա նրբանցքում նրանք կորան դարբասի մթության մեջ։

— Թո՛նի...,— բղավեց Ջեյնցը։

Տղաներն իսկույն հավաքվեցին։

— Հաջողվե՞ց... Դե՛, ասացեք...

— Թո՛նի, դու ճիշտ էիր ասում,— սկսեց Կարլը,— նա մեզ վռնդեց։ Հարկավոր է ամբողջ դասարանով գնալ։

Տղաներն աղմկեցին։ Կարլի ձայնը խեղդվում էր աղմուկի մեջ։

— Լռեցեք,— գոչեց Թոնին,— Վիլլի՛, Կլաո՛ւս, Ֆրա՛նց, սոսինձ ունե՞ք։ Լավ. գործի անցնել, ինչպես որոշված է։ Մեկ-մեկ աննկատելիորեն գնացեք դեպի խանութ...

1 Ամի—ամերիկացի բառի կրճատված ձևն է։

Երբ կանչեմ, վազեք կամրջով, ցուցափեղկին պլակատ փակցրեք։ Այստեղ կհավաքվեք։ Մինչև որ խանութպանը պլակատը պոկի, մյուս տղաները նորից կփակցնեն։ Հասկացա՞ք։

— Կեցցե՛ս,— գոչեց Վիլլին։

— Վաղը մեզ օգնության կգան ութերորդ դասարանցիները։ Երկու օր հետո ցուցափեղկում ոչ մի ատոմական ռումբ չի մնա,— ասաց Թոնին։



Գրիբելը վեց անգամ պոկեց ցուցափեղկին փակցված պլակատները, որի վրա գրված էր՝ «Ամի, կորի՛ր տուն»։

Վերջապես նա անձնատուր եղավ։ Նա հայհոյելուց ու զայրանալուց հետո խաղալիքներով լեցուն արկղները քարշ տվեց նկուղ։ Արկղներում երեսունվեց հատ «Շեղտակի գրոհ» խաղալիք կար։

Փոխադր. Հ. ՍԵՎԱՆ

# ԱՍՏՂԱԼԻՑ ԵՐԿԻՆՔ

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ
(Աստղադիտարանի ավագ գիտական աշխատող)

Աստղալից երկնակամարի հետ ծանոթանալու ամենալավ ժամանակը ամռան պարզ գիշերներն են։

Պիոներները և դպրոցականները այդ ժամանակ գտնվում են ճամբարներում, ամառանոցներում և ամեն օր կարող են բաց դաշտ դուրս գալ ու դիտել երկինքը։ Նրանք պետք է սովորեն ճշտությամբ կարդալ երկնակամարի քարտեզն այնպես, ինչպես երկրագնդինը։ Դա այնքան էլ դժվար չէ։

Հյուսիսային և Հարավային կիսագնդերից երևացող բոլոր աստղերը, շատ հին ժամանակից սկսած,

մարդիկ բաժանել են աստղային առանձին խմբերի, որոնք կոչվում են համաստեղություններ: Մեր աշխարհագրական լայնությունից կարելի է դիտել՝ Մեծ Արջի, Փոքր Արջի, Վիշապի, Կարապի, Քնարի, Կառավարի, Հերկուլեսի, Աղեղնավորի, Կարիճի, Ցուլի, Օրիոնի, Արծվի և այլ համաստեղությունները:




Ամենից առաջ պետք է ճանաչել Բևեռային աստղը, որը համարվում է Փոքր Արջի համաստեղության աստղը: Նա աշխարհի առանցքին կամ երկնային ոլորտի Հյուսիսային բևեռին շատ մոտ է: Հենց դրա համար էլ կոչվում է «Բևեռային» աստղ:

Երկնքում այդ աստղը գտնելու համար պետք է ճանաչել յոթ աստղից բաղկացած Մեծ Արջի համաստեղությունը, որը սայլի կամ շերեփի նմանություն ունի: Պետք է Մեծ Արջի մի ուղիղ գծի վրա գտնվող երկու աստղի միջոցով, նկարում ցույց տված ձևով ուղիղ գիծ տանել հինգ անգամ ավելի, քան այդ երկու աստղերի միջև եղած հեռավորությունն է: Այդ վերջակետում կլինի Բևեռային աստղը: Այդ աստղի միջոցով գիշերը կարելի է որոշել հորիզոնի կողմերը: Երբ նայենք Բևեռային աստղի ուղղությամբ, դա կլինի հորիզոնի հյուսիսը. դրա հակառակ կողմը՝ հարավը, աջ կողմը՝ արևելքը և ձախը՝ արևմուտքը:

Պատկերացրեք, որ գիշերը անծանոթ վայրում եք գտնվում և կողմնացույց չունեք: Այդ դեպքում առանց երկնային մարմինների օգնության չեք կարող ճշտությամբ որոշել հորիզոնի կողմերը:

Երբ մի քանի ժամ կամ ավելի երկար ժամանակ ուշադիր հետևեք Բևեռային աստղին, կնկատեք մի շատ հետաքրքրական երևույթ: Բևեռային աստղը գրեթե անշարժ է մնում, իսկ մնացած աստղերը մի օրվա ընթացքում պտտվում են նրա շուրջը, որը հետևանք է երկրագնդի իր առանցքի շուրջը բոլորվելուն:

Սովորական լուսանկարչական ապարատով կարելի է գիշերը նկարել Բևեռային աստղը, նրա շուրջը եղած աստղերի նկարները կազմում են մեկը մյուսին զուգահեռ աղեղներ (նկար 2):

Երբ հնարավոր լինի 24 ժամ լուսակայումով անընդհատ նկարել, ապա աղեղները կդառնան համակենտրոն շրջաններ: Այս վերջին փորձը հնարավոր է կատարել, միայն երկրագնդի բևեռներում անընդհատ գիշերների շրջանը սկսվելու ժամանակ: Մյուս համաստեղությունների ու աստղերի տեղերը երկնակամարում իմանալու համար պետք է օգտագործել աստղային քարտեզ՝ (նկար 3): Քարտեզի վրա բացի համաստեղությունների անուններից գրված են նաև նշանավոր աստղերի անուններ, ինչպես օրինակ՝ Վեգա, Կապելլա, Սիրիուս:

Աստղային քարտեզի օգնությամբ կարելի է գտնել նաև պայծառ մոլորակների՝ Վեներայի, Մարսի, Յուպիտերի և Սատուրնի տեղը:

1952 թվականին, Յուպիտերը՝ Արեգակնային համակարգության ամենամեծ մոլորակը, երկնակամարի հյուսիս արևելյան մասում երևացել է հուլիս ամսին՝ գիշերվա երկրորդ կեսին: Սեպտեմբերից մինչև տարվա վերջը Յուպիտերը դիտելու ամենալավ ժամանակն է: Այդ ամիսներին նա լինելու է երկնքի հարավային մասում՝ Խոյի համաստեղությունում:

Մարսը տեսանելի է ամբողջ տարին, սակայն նրա



ամենալավ դիտելու ժամանակը ապրիլ և մայիս ամիսներն են եղել: Նա այժմ գտնվում է Կույսի և Կշեռքի համաստեղությունների միջև, երկնակամարի հարավ արևմտյան մասում:

Վեներան երևալու է արևմուտքում, օգոստոսից. բայց նրան տեսնելու ամենահարմար ժամանակը լինելու է տարեվերջը:

Մյուս մոլորակները այնքան թույլ պայծառություն ունեն, որ հասարակ աչքով չեն դիտվի: Ճամբարում եղած ժամանակ կարելի է դիտել՝ Պերսեյի մետեորական հոսքը, որ տեղի է ունենում ամեն տարի օգոստոսի 11.-13-ի կես գիշերին:




**Աստղալից երկնքի քարտեզը**

# ԱՄԵ՛Ն Ի՛ՆՉԻ ՄԱՍԻ՛Ն

## Ամենաթեթև ծառը



Բալսան աչքի է ընկնում իր շատ թեթև փայտանյութով: Հինգ մետր երկարություն ունեցող հաստ գերանը մի մարդ հեշտությամբ կարող է դնել ուսին և տանել. իսկ բալսայի բարակ տախտակը քամին թռցնում է, ինչպես թղթի թերթը:

Կենտրոնական Ամերիկայի հնդիկները վաղուց ի վեր այդ ծառը օգտագործում են թեթև նավակ՝ կանոե և լաստեր պատրաստելու համար: Ընդամենը երեք տախտակից բաղկացած լաստը հեշտությամբ տանում է վեց մարդ իրենց բեռներով: Բալսան աճում է արևադարձային անտառներում՝ գետերի ափերին և ստվերոտ տեղերում: 15—20 տարեկան բալսան հասնում է մինչև 50 մետր բարձրության: Նրա փայտանյութը մի քիչ ավելի ծանր է, քան մատղաշ ծառինը:

Մատղաշ բալսայի փափուկ, առաձգական և փայլուն փայտանյութը մշակվում է հեշտությամբ: Նրա թեթևությունը հնարավոր է դարձնում լայնորեն օգտագործել ինքնաթիռների և զործիքաշինության մեջ: Լողունակությունը հնարավորություն է տալիս օգտագործել ծովային գործում, գեղեցիկ ձայնաբանական հատկությունները՝ բարձրախոսներ և միկրոֆոններ պատրաստելու համար: Բալսայի փայտանյութը շատ մեծ խոնավություն է պարունակում: Դրա համար էլ մինչև մշակումը խնամքով չորացվում է:

Բալսայի առաջին պլանտացիաները գցվել են Կոստա-Ռիկայի Կարաիբյան ծովափին: Այժմ դրանք տարածվում են ոչ միայն Կենտրոնական և Հարավային Ամերիկայում, այլև Ցեյլոնում և Անտիլյան կղզիներում:

## Աբակա



Աբական բանանի ցեղակից բույս է, բայց բանանից տարբերվում է իր ավելի նեղ ու սուր տերևներով, վառ կարմիր ու կանաչավուն ցողունով և բոլորովին չուտվող պտուղներով: Աբակայի տերևներից դեռ 16-րդ դարում սկսել էին մանրաթել ստանալ: Նա թեթև է, ավելի ամուր, քան կանեփի թելը: Նրանից պարաններ են պատրաստում: Աբակայից պատրաստված պարանները խոնավությունից չեն վախենում և լայնորեն օգտագործվում են ծովային գործում: Աբակայի բոլոր պլանտացիաների ավելի քան կեսը գտնվում է Ֆիլիպինյան կղզիներում: Այդ պետության մայրաքաղաքի՝ Մանիլայի անունով, աբական կոչվում են նաև մանիլյան կանեփաթել: Երբ բույսը երկու-երեք տարեկան է դառնում, նրանից սկսում են կտրել տերևները, տրորում են, իսկ հետո փափուկ մասերը զատում: Մնացած սպիտակ մանրաթելերը արևի տակ կամ հատուկ վառարաններում չորացնում են, կապում հակերով և ուղարկում գործարաններ՝ հետագա մշակման համար:

Կոստա-Ռիկայի աբակայի պլանտացիաներում աշխատում են նեգրերը, որոնք բերված են մեր դարի սկզբին Յամայկայից:

## «Երգող սայլակներ»



Կոստա-Ռիկայի ռեսպուբլիկայում կարելի է տեսնել ինքնատիպ խայտաբղետ նկարներով զարդարված երկանիվ սայլակներ, որոնց եզներ են լծում: Սայլակների կողերը և անիվները պատրաստվում են ամուր փայտի ամբողջական կտորներից և ծածկված են հնարամիտ նախշերով՝ ժողովրդական ստեղծագործության արժեքավոր նմուշներով: Ռեսպուբլիկայի ամեն մի շրջան ունի իր սիրած նկարները և գույները: Բացի դրանից, բոլոր սայլակները պետք է «երգեն»: Դրա համար դրանք պատրաստում են այնպիսի նյութից, որ անիվները ձայն հանեն՝ հորինելով մի ինքնատիպ եղանակ: Հրնում այդպիսի սայլակներ պատրաստում էին կարմիր փայտից: Այժմ նրանց համար օգտագործվում է սպիտակ կամ դեղնավուն «ալիգատոր» ծառի փայտանյութը: Երբ մի որևէ բանով հարվածեն այդպիսի անվին, նա զրնգուն ձայն կարձակի, շատ նման մարիմբայի (հնագույն երաժշտական գործիք) ձայնին: Գյուղի բնակիչները հավատացնում են, որ անիվների ձայնից նրանք նշգրիտ կերպով կարողանում են ասել, թե ում սայլակն է անցնում:

Շուկա գնացող սայլակի «երգով» գյուղացիները վաղ առավոտյան արթնացնում են Կոստա-Ռիկայի մայրաքաղաքի՝ Սան-Խոսեի բնակիչներին:

## Բանան



Շատ հին ժամանակներից սկսած արևադարձային Ասիայում և Աֆրիկայում աճեցնում են բանաններ, որոնք տալիս են ալյուր պարունակող քաղցր պտուղներ: Բանանները խոտաբույսեր են՝ հաստ ցողունով: Նրանց պսակը մինչև չորս մետր երկարություն և մեկ մետր լայնություն ունեցող տերևներ ունի: Բանանները շատ ջուր են պահանջում: Դրա համար էլ աճեցվում են խոնավ, ցածրադիր տեղերում:

Այդ բույսի ամենամեծ պլանտացիաները գտնվում են Կոստա-Ռիկայում, Յամայկայում, Վենեսուելայում և Գոնդուրասում: Դրանք բոլորը ամերիկյան մոնոպոլիաների սեփականությունն են:

Բանանը տնկվում է շիվերով. 8—12 ամսից հետո ծաղկում է և 30—50 կիլոգրամ ունեցող միայն մի փունջ է տալիս, եռանիստ, արտաքուստ վարունգի նման պտուղներով:

Բանանի բազմաթիվ տեսակները տալիս են տարբեր մեծության մանր ու խոշոր պտուղներ: Խոշորը միայն մուրաբայի համար է, իսկ փոքրիկ մատնաչափ պտուղները, որ իրենց համով հիշեցնում են դեղձը, սովորական գործածության համար են: Բանանի 400 կուլտուրական սորտ կա: Պտուղները չփչանալու, կամ փոխադրման ժամանակ համը չկորցնելու համար, բանանը քաղում են խակ վիճակում:

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Թեև ունի շատ դուռ ու պատուհան,
Զուկն ընկավ մեջը, ելք չկա նրան:

Փայտե տնակ ամրակուռ,
Փակ է և դուռ, և կտուր,
Բնակիչներն եռանդուն
Քաղցր հաց են պատրաստում:

Ծառի բնին, շուքի տակ
Թակում է նա— թա՛կ, թա՛կ, թա՛կ:
Թակում է նա անընդհատ
Ինչպես մի ժիր փայտահատ.
Սուր կտուցովն իր հատու
Փուտ կեղևներն է փետում
Ու մեր կանաչ կաղնուտում
Որդ ու միջատ է ուտում:

# ԺԱՄԲԱՐԱՅԻՆ ՔԱՅԼԵՐԳ

Խոսք Մ. ԿՈՐՅՈՒՆԻ

Երաժշտություն Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆԻ

ԱՇԽՈՒՅԺ, ՔԱՅԼԵՐԳԻ ԹԱՓՈՎ

Բնության մեջ, ծաղկունքում,
Կարկաչում է երգ ու տաղ,
Երջանիկ կյանքն ենք երգում մենք
Սրտերով մեր կենսուրախ:
— Քեզ բյուր ողջո՜ւյն, մեր ճամբա՛ր,
Ողջո՜ւյն ձեզ, սար ու անտառ:

Ջինջ երկինքն է վերևում,
Ոտքերի տակ՝ ծաղիկներ,
Զով հովերն են համբուրում մեզ
Ու բերում նոր կյանք ու սեր:
— Քեզ բյուր ողջո՜ւյն, մեր ճամբա՛ր,
Ողջո՜ւյն ձեզ, սար ու անտառ:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Պատասխաններ

Մեր ամսագրի այս տարվա մարտի համարում տպագրված Ի. Վ. Միչուրինի ասույթը բնության վերափոխման մասին այս է՝ «Մենք չենք կարող բնությունից շնորհներ սպասել, դրանք նրանից վերցնելը մեր խնդիրն է»: Այս ասույթը ճիշտ գտել են՝ Շ. Խաչատրյանը (Դավիթաշեն), Ս. Ղազարյանը, Հ. Մկրտչյանը, Ռ. Հակոբյանը, Ջ. Սարգսյանը (Լենինական), Կ. Երիցյանը (Ադրբեջանական ՍՍՌ Սալեր գյուղ) և շատ ուրիշները:

Ապրիլի համարում տպագրված կրոսվորդ-կրիպտոգրամման՝ ռուս մեծ գրող Մ. Գորկու ասույթը գրքի մասին այս է՝ «Սիրեցեք գիրքը, գիտության աղբյուրը: Միայն նա կարող է դարձնել մեզ հոգեպես ուժեղ, ազնիվ և խելացի մարդ»:

Ճիշտ գտել են՝ Է. Իգնատյանը (Երևան), Ի. Գրիգորյանը (Այգեստան գյուղ), Օ. Թեմուրյանը, Օ. Սարոյանը, Դ. Ջաղոյանը (Դվին), Տ. Շահնազարյանը (Դիլիջան), Հ. Գալոյանը (Խնկոյան գյուղ), Մ. Մադոյանը (Ախալքալաք), Ա. Հովսեփյանը, Է. Պետրոսյանը (Ստեփանակերտի շրջանի Բաղարա գյուղ), Օ. Արամյանը (Ադրբեջանական ՍՍՌ Նախիջևանիկ գյուղ) և ուրիշները:

### ՇԱԽՄԱՏ

Մեր ամսագրի այս տարվա 3-րդ համարի շախմատային խնդիրների պատասխանները հետևյալն է.

**Խնդիր առաջին**

1. b7—b8 *ձի.*   Աf8 : e8
2. Թe—g8×

**Խնդիր երկրորդ**

1. Աd2—d3   Աb2—a2
2. Աd3—e2   Աa2—a1 *(միակ քայլը)*
3. Նa3×

*եթե՝*

1 . . . . . . Աb2—a1

*ապա՝*

2. Նd3+   ab1 *(միակ քայլը)*
3. Նa1×

*եթե՝*

1 . . . . . . ab1

*ապա*

2. Նa3   Աc1
3. Նa1×

Ճիշտ պատասխանել են՝

Միրզախանյան Հրանտ (Շամշադին, Վ. Կարմիր աղբյուրի դպրոց), Գ. Մաթևոսյան, Ջ. Մաթևոսյան (Ապարանի շրջանի Մռավյան գյուղի դպրոց), Ժ. Դիլբարյան (Լենինական 16-րդ դպրոց), Գ. Անանյան (Իջևանի հայկական միջնակարգ դպրոց), Մարատ Ղազարյան (Գորիսի միջնակարգ դպրոց), Կ. Հարությունյան (Նոյեմբերյանի միջնակարգ դպրոց), Վ. Իշխանյան (Ստեփանավանի շրջան, Լեջան գյուղի դպրոց) Լ. Օվանեսյան (Վրաստանի ՍՍՌ-ի Ախալքալաքի ռուսական դպրոց):

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը
նկ. Բ. ՔՈԼՈԶՅԱՆԻ


*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 05916, Պատվեր 414. Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 5/VIII—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*




## 1952 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

### Պեչորայի երկաթուղագիծը

Ծանրաքաշ գնացքը բարձված հեռավոր Պեչորայի հարստությամբ՝ քարածուխով ու անտառանյութով, սլանում է հարյուրավոր կիլոմետրեր ձգված անտառների սաղարթախիտ ծառերի միջով:

Արդեն տասը տարի է ինչ անընդհատ, գիշեր ու ցերեկ սլացող գնացքների սուլոցները խախտել են այս կուսական անտառների դարավոր անդորրը:

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին գերմանական ֆաշիստները հույս ունեին ռմբակոծելով և երկաթուղագծերը շարքից հանելով, նակատը կտրել թիկունքից: Սակայն, սովետական քաջարի ժողովրդի, հատկապես խիզախ երկաթուղայինների անձնուրաց աշխատանքի շնորհիվ թշնամու հույսերը չարդարացան:



Այն օրերին, երբ ֆաշիստները սպառնում էին հարազատ Մոսկվային, շահագործման հանձնվեց 1200 կիլոմետր երկարություն ունեցող Հյուսիս-Պեչորական մագիստրալը, որը սկիզբ առնելով Պեչորայի քարածխի ավազանի խոշորագույն տնտեսական կենտրոն Վորկուտայից (Կոմի ԱՍՍՌ) քարածխի համար ուղղակի ելք է բացում դեպի երկրի կենտրոնական և հյուսիս-արևմտյան շրջանները: Պեչորայի երկաթուղագիծը մեծ չափով նպաստեց քարածուխի հանույթի բարձրացմանը, որ 1945 թվականին աճել էր արդեն 11 անգամ:

Պատերազմի ժամանակ, երբ թշնամին զավթել էր Դոնբասը, Պեչորայի երկաթգիծը հնարավորություն տվեց հյուսիսի քարածուխով ապահովելու մեր ռազմական արդյունաբերության և երկրի այլ կարիքները:

### Սակկո և Վանցետտի

Քսանհինգ տարի առաջ՝ 1927 թվականի օգոստոսի 23-ին, Ամերիկայում, էլեկտրական աթոռի վրա մահապատժի ենթարկվեցին երկու իտալացի բանվոր՝ Սակկոն ու Վանցետտին: Գործազրկությունը հայրենի երկրից նրանց քշել էր Ամերիկա, սակայն այստեղ էլ նույն դաժան օրենքներն էին: Կյանքը նրանց մղում է դեպի պայքար: Սակկոն ու Վանցետտին ակտիվ կերպով մասնակցում են Ամերիկայի բանվորական շարժմանը: Ամերիկայի բուրժուաները Սակկոյին և Վանցետտիին կողոպտման ու սպանության կեղծ մեղադրանքով բանտ նետեցին և մահվան դատապարտեցին, չնայած որ իսկական հանցագործ գանգստերը անձամբ խոստովանեց իր հանցանքը:

Նման սպանություններով կապիտալիստները ցանկանում էին սարսափեցնել բանվոր դասակարգին: Սակայն նրանք սխալվեցին: Սակկոյին ու Վանցետտիին մահվան դատապարտելու լուրը ոտքի հանեց ամբողջ աշխարհի բանվոր դասակարգին: Նրանց կյանքը փրկելու համար ամենուրեք կոմիտեներ կազմակերպեցին, տարբեր երկրներում բողոքի հսկայական ցույցեր ու գործադուլներ տեղի ունեցան: Ամերիկյան բուրժուազիան յոթ տարի շարունակ չէր համարձակվում մահապատիժը իրագործել: Սակկոն ու Վանցետտին բեն դատարանում, և բեն յոթնամյա բանտարկության ընթացքում իրենց ցույց տվեցին որպես բանվոր դասակարգի գործին նվիրված արի ու անվախ մարտիկներ:

### Ռափայել Պատկանյան

Այս տարի լրանում է հայ ականավոր գրող Ռափայել Պատկանյանի մահվան վաթսունամյակը:

Պատկանյանը սկզբնական կրթությունը ստացել է իր հոր մոտ, իսկ բարձրագույն կրթությունը՝ Մոսկվայում և Պետերբուրգում (այժմ Լենինգրադ): Չնայած, որ Պատկանյանը իր հայացքներում հետևողական դեմոկրատ չէր և թույլ է տվել մի շարք լուրջ սխալներ, բայց և այնպես իր մի շարք գրվածքներում աշխատում էր հայ ժողովրդին ազգային ինքնագիտակցության բերել: Նա միաժամանակ գրում էր բանաստեղծություններ և արձակ գործեր, որոնցում ցույց էր տալիս չքավորների ծանր վիճակը, «դդմագլուխ» հարուստների ապականված բարքերը, ծաղրում էր հոգևորականներին:



Պատկանյանը հայ ժողովրդի մեծագույն թշնամին էր համարում սուլթանական Թյուրքիան, որը հրով ու սրով աշխատում էր ոչնչացնել հայերին: Նա տեսնում էր, որ Թյուրքիայի թիկունքում կանգնած է «արյունածարավ Եվրոպան»: Այդ կապակցությամբ բանաստեղծը գրել է՝ «Երբ ազգովին մորթվենք, Եվրոպան մեզ վրա ցավակցական հայացք ձգելու և արդեն թերև հառաչանք հանելու չէ»: Պատկանյանն իր գրական կյանքի սկզբնական օրերից նշանաբան էր դարձրել Կարամզինի հայտնի խոսքերը՝ «Գրե այնպես, ինչպես որ խոսում են և խոսե այնպես, ինչպես որ գրում են»: Մինչև օրս էլ մեծ հետաքրքրությամբ են կարդացվում Պատկանյանի «Արաքսի արտասուքը», «Աղեն տանն է» և այլ բանաստեղծությունները, ինչպես նաև «Փառասեր», «Ես նշանած էի», «Տիկին և նաժիշտ», «Զախու» և այլ արձակ գործերը:

Պատկանյանը ունի նաև մի շարք գողտրիկ մանկական բանաստեղծություններ՝ «Աշուն», «Բադիկ», «Արև» և այլն:

